ՑՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Ահեղ իմ Թարթառի կապույտ երակներում
Գյուղս կանաչ երազ ու հեքիաթ է կանաչ.
Մի փեշնահա այստեղ՝ գետի կոհակներում,
Մյուս փեշը վերև՝ բլուրներին կանաչ:

Ես թաղվել եմ նրա ստվերներում մաքուր
Եվ փնտրում եմ մաքուր զեփյուռն իմ մանկության,
Որ շոյում էր սիրով ճակատներս դալուկ՝
Պատերազմից հենց նոր ելած խաղաղությամբ:

Արցունքները անցած քաղցրանում են մի քիչ,
Ստանում են ուրիշ երանգ ու գույն,
Երբ նայում ենք նրանց տարիների միջից
Եվ օրերի միջից կարոտաբույր:

Բայց ուրիշ են հիմա մանուկները գյուղի,
Էլ աչքերը նրանց կրակներ չեն մխում՝
Պահված հոնքերի տակ հույսի ու երկյուղի,
Ճնճղուկների նման լուռ ու փխրուն:

Նրանց ժպիտներում մանկությունն իմ անցյալ
[illegible]կնվում է կարծես երանգներով ուրիշ,
[illegible]յների մեջ ուրիշ, ջինջ ու պայծառ,
Անհունորեն ազատ, անկախ, անվիշտ:

Օ՜, թող սերը նրանց ու երազը մաքուր
Իջնի, իջնի, իջնի այս հին հողին,
Որ սուրբ իմաստությամբ մեզ իրար է կապում
Եվ շաղկապում գալիք արևների շողին...



# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## N: 7 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկի 1-ին էջը՝
ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Շապիկի 4-րդ էջի լուսանկարը՝
ՄԵՐՈՒԺԱՆ ԲԱԲԱՋԱՆՅԱՆԻ

# ԴՊՐՈՑԸ ԿՐՈՒՄ Է ՉՈՒԽԱՋՅԱՆԻ ԱՆՈՒՆԸ

ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

Երևանի Նոր-Արեշ թաղամասում, ճանապարհից մի փոքր խոր ընկած, տուֆակերտ, եռահարկ մի շենք կա, շենքի վրա էլ կա մի ցուցանակ, որն ազդարարում է, թե այդտեղ է գտնվում Տիգրան Չուխաջյանի անվան երաժշտական դպրոցը։

Չուխաջյանը հայկական առաջին օպերաների և օպերետների հեղինակն է, գրել է նաև դաշնամուրային ստեղծագործություններ, երգեր ու ռոմանսներ։ Ծնվել է Պոլսում, պալատական ժամագործի ընտանիքում։ Սկզբնական կրթությունը ստացել է ծննդավայրում, ապա մեկնել է Միլան՝ շարունակել ուսումը և վերադարձել Պոլիս, որտեղ և ծավալել է իր երաժշտական գործունեությունը։ 60-ական թվականներին երաժշտություն է գրել Ռ. Ստեփչյանի «Վարդան Մամիկոնյան, փրկիչ հայրենյաց», Պ. Դուրյանի «Վարդ և Շուշան» ներկայացումների համար։ Այդ տարիների ազգային ազատագրական շարժումը խոր ազդեցություն է թողնում Չուխաջյանի վրա, և նա ստեղծում է իր անդրանիկ օպերան՝ «Արշակ Երկրորդը», որի բեմադրությունը սակայն, նրան չվիճակվեց տեսնել։ Նյութական կարիքը և սուլթան Համիդի հայահալած քաղաքականությունը ստիպում են նրան հեռանալ Թուրքիայից և հաստատվել Փարիզում։ Համաճարակը թույլ չի տալիս անցնել Կովկաս, և կյանքի վերջին տարիները նա անցկացնում է Իզմիրում, այդտեղ էլ մահանում է 1898 թ. մարտին։

1942 թ. Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերային թատրոնը ներկայացրեց Չուխաջյանի «Լեբլեբիջի», այնուհետև, 1945 թ.՝ «Արշակ Երկրորդ» օպերան, որը առ այսօր չի իջնում հայկական բեմից։

Երևանի Օրջոնիկիձեի շրջանի երաժշտական դպրոցը, որին շնորհվել է Տիգրան Չուխաջյանի անունը, այս տարի բոլորում է իր գոյության քսանհինգ տարին։ Դպրոցի սաներից շատերը փայլուն քննություններ են հանձնել և երաժշտական կրթությունը շարունակել Ռոմանոս Մելիքյանի անվան ուսումնարանում, տասնամյակում և Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայում։ Նրանցից շատերն այժմ դասավանդում են նույն՝ Չուխաջյանի անվան դպրոցում։

Իր հիմնադրման տարում՝ 1957 թ. դպրոցն ուներ 88 աշակերտ՝ երեք դասարանով. դաշնամուրի, ջութակի և թավջութակի։ Շենք չկար, դասերը տեղի էին ունենում Նալբանդյանի անվան միջնակարգ դպրոցում՝ երեկոյան ժամերին։ 1968 թ. դպրոցը տվեց իր առաջին շրջանավարտները, իսկ երկու տարի անց շահագործման հանձնվեց նորակառույց, հարմարավետ շենքը։ Բացվեցին նոր բաժիններ, ավելացավ աշակերտների թիվը։ Այստեղ աշխատելու եկան ճանաչված կոմպոզիտոր Գևորգ Արմենյանը, դասատուներ Մարտին Երիցյանը, Նորա Գևորգյանը, Արաքսյա Սարյանը, ջութակահար Էդվարդ Դալյանը և ուրիշներ։ Այժմ դըպրոցն ունի 650 աշակերտ, որոնք մաս-

Ավարտական քննության է պատրաստվում Ռուզաննա Աթոյանը (դաս. Անահիտ Պետրոսյան)։

Քիչ հետո կսկսվի համերգը։ Օֆ. Սուքիասյանը վերջին ցուցումներն է տալիս Հայկանուշին ու Նունեին։

նագիտություն են ստանում 14 գործիքների գծով: Մեծ մասը սովորում է դաշնամուրային բաժնում, որը համարվում է դպրոցի հիմնական ու առաջատար բաժինը: Բայց, այնուամենայնիվ, ըստացված մրցանակների ու դիպլոմների մեծ մասը պատկանում է լարային բաժնին: 1967 թ. ջութակահարների





հանրապետական մրցույթում Արմեն և Աշոտ Զենթերչյանները, Արմեն Արաքյանը (դաս. Էդ. Դայան), ինչպես նաև Պողոս Էքսերջյանը (թավջութակ, դաս. Կ. Թագվորյան) և Մկրտիչ Թարախչյանը արժանացան առաջին մրցանակի: Իսկ Նշան Չալիկյանը դարձավ թավջութակահարների անդրկովկասյան մրցույթի դափնեկիր (դաս. Էդ. Դայան):

1974 թ. չորրորդ դասարանի աշակերտուհի Վարսիկ Սարգսյանը «Փոքրիկ ջութակ» հանրապետական մրցույթում գրավեց առաջին տեղը (դաս. Օֆ. Սուքիասյան): Վարսիկ Սարգըսյանն այժմ սովորում է Երևանի Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայում: Կոմիտասի ծննդյան 100-ամյակին նվիրված համաքաղաքային մրցույթում դպրոցի երգչախումբը կոնսերվատորիայի ուսանող Հարություն Գրքաշարյանի ղեկավարությամբ գրավեց առաջին տեղը, որից հետո Տալլինից, Թբիլիսիից, Բաքվից և Դուբնայից փոխադարձ համերգների հրավերներ ստացվեցին:

1973 թ. այստեղ բացվել է ժողովըրդական գործիքների դասարան (ուդ, քամանչա, դուդուկ, շվի, հետագայում նաև՝ զուռնայի բաժին):

Մեկ տարի անց այս բաժնի սովորողները հանդես եկան հաշվետու համերգով: Ուշագրավ էին Նիկոլայ Մըկրտչյանի, Արամ Խաչատրյանի և մյուսների կատարումները:

Դպրոցը Երևանի «Հիդրոհաղորդակ» գործարանի և «Հայռեկլամի» աշխատավորության, ինչպես և №№ 35, 49, 68 դպրոցների աշակերտության հետ հաճախ է հանդիպումներ ունենում:

Հիշատակության արժանի է և այն, որ շեֆ գործարանի (էլեկտրատեխնիկական) բանվորների երեխաները հավասար միավորների դեպքում դպրոց են ընդունվում առաջին հերթին:

Քայլում ես մաքուր ու լուսավոր միջանցքներով, մեկ անգամ ևս աչքի անցկացնում միութենական հանրապետությունների երաժշտական կյանքին վերաբերող խնամքով պատրաստված ցուցափեղկերը: Եվ մտածում ես, որ լսարաններում փակված, երաժշտության այբուբենը սերտելու հետ միաժամանակ, դպրոցի ուշիմ սաների հոգին է կրթվում, գեղեցկանում երաժըշտության զորավոր ներգործությամբ:

Գոհունակությամբ ես հրաժեշտ տալիս Երևանի Տ. Չուխաջյանի անվան դպրոցի համերաշխ ու շնորհալի կոլեկտիվին ու նրա ջանադիր ղեկավար Լևոն Գրիգորյանին, որոնք լծված են գեղեցիկը սերմանելու դժվարին, բայց և որքա՜ն շնորհակալ գործին:

## 1. ԳՐՏՆԱԿԸ

Ո՞վ չգիտե, թե ինչ բան է գրտնակը: Խմորբացիկ է, ողորկ փայտիկ, որով տափակեցնում, բարակեցնում են խմորագունդը:

Ասում են գրտնակը սկզբում եղել է հայոց հացահատիկի աստվածուհի Աշորայի ձեռնափայտը: Բայց դա սովորական գավազան չէր: Հենց որ Հայոց աշխարհում մեկը հացի մնացորդը կամ նույնիսկ փշուրը դեն էր նետում՝ աղբին խառնելով, ապա աստվածուհու ձեռքից ձեռնափայտը դուրս էր թռչում, հասնում ու հարվածում հացն անարգողի ճակատին ու ետ գալիս աստվածուհու մոտ:

Գրտնակն այդպես կլորիկ ու թմբլիկ է դարձել սրա-նրա ճակատին թմփացնելով:

Հետո այնպես եղավ, որ մարդիկ սովորեցին հացի ոչ մի փշուր դեն չնետել և աստվածուհին իր ձեռնափայտը նվիրեց մարդկանց:

Չկարծեք, թե սրանով գրտնակի պատմությունը վերջանում է: Հիմա էլ աշխարհում մարդիկ կան, որոնք հացի հարգը չգիտեն: Մեկ էլ տեսար հեքիաթից մի գրտնակ դուրս եկավ ու խփեց այդպիսի մարդկանց ճակատին: Աշխարհում ինչ ասես, որ չի լինում:

## 2. ԱՐՏՈՒՅՏԸ

Արտույտի հետ այս բանը պատահել է շատ վաղուց:

Աշխարհում ոչ մի թռչուն այնքան չի սիրում հացահատիկը, որքան այս խայտաճամուկ փետրավորը: Դե, նա ծնվել է ցորենի հետ, դարձել արտերի առաջին տերը: Այդ ժամանակներում, տիեզերական մեծ խաղաղության մեջ, արտույտի ճռվողյունը խառնվում էր հասկերի մեղմիկ սոսափյունին և հնչում որպես երջանկության մեծ համանվագ: Խայտաճամուկը ուտում էր վայրի արտերի քաղցր հատիկները և ինքն իրեն անվանում արտ ուտող, արտուտիկ, արտույտ: Նա գոհ էր և՛ իր անունից, և՛ իր կյանքից, և՛ եզր ու պռունկ չունեցող մեծ խաղաղությունից:

Բայց ահա երևաց մարդը և արտույտը քիչ մնաց թե ընկներ այդ նոր արարածի մեծ ոտների տակ: Թռչնակը քաշվեց արտեզրերը: Մարդը սկսեց նոր արտեր աճեցնել: Թվում էր, թե ուր որ է աշխարհը կդառնա համատարած արտ: Եվ արտույտը որոշեց իր սեփական արտն ունենալ: Մարդու աճեցրած արտից կտուցով հատիկներ էր վերցնում, տանում ու թաղում կողքի հանդերում և տեղը հիշելու համար նշան էր բռնում ամպին: Բայց աշխարհում ի՞նչն է հաստատուն իր տեղում մնում, էր ամպը մնար: Հողի տակ թաղած հատիկները ծլում են, հասկավորվում, բայց մինչև այժմ էլ արտույտը չի կարողանում գտնել իր արտը, որովհետև այդ խենթ ու խելառ ամպերը



քամու բերանն ընկած, իրենք էլ չեն կարող ասել, թե որտեղից ուր են գնում:

## 3. ԽՆՁՈՐՆ ՈՒ ՀԱՑԸ

Վանա լճի արևելյան ափին, Վան քաղաքի կողքին, մի ավան է եղել Արտամետ անունով:

Հայաստանի ամենահամեղ ու ամենաալվան խնձորն աճել է այս Արտամետում: Իսկական արքայախնձոր է, որի մեջ կորիզները շարժվում, շխկշխկում են: Քաղցր է, նուրբ կեղևով, փխրուն, հյութեղ, հոտավետ: Արտամետի խնձորը թաքցնել

չես կարող, զմայլելի հոտը կմատնի նրա տեղը: Աշխարհում ոչ մի խնձորի բուրմունք այնքան երկարակյաց չէ, որքան Արտամետինը: Դրա համար էլ ասում են՝ Վանի հարսանեկան սնդուկներում խընձորահոտը մնում է քառասուն տարի:

Արտամետում մի պարտիզպան էր ապրում Ատոմ անունով: Նա խենթի պես սիրում էր իր աճեցրած խնձորը: Մի օր Ատոմը մտքում դնում է սնվել միայն խընձորով: Հացն ի՞նչ է իր խնձորի մոտ: Յոթութ ամիս նա իրեն առույգ ու կայտառ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ




էր զգում, բայց հետո միանգամից ուժասպառ եղավ և քիչ մնաց շունչը փչեր: Ու ստիպված ձեռքը տարավ հացին: Հենց այդ գիշեր նա մի երազ տեսավ, որտեղ խնձորը լեզու առած խոսեց նրա հետ.

— Ուտելիքների մեջ, Ատո՛մ, ես մի քիչ սնունդ եմ, մի քիչ էլ զարդ: Ոչ մի մարդու կող ինձնով չի պնդացել: Դու հզոր նախնիք ես ունեցել, որոնք ապրել են հացով: Նրանցից ժառանգած քո մարմինը կարոտ է հանապազօրյա հացի: Դու, Ատո՛մ, կարող էիր խնձորով ապրել, եթե քո մարմինը սկսվեր քեզնով: Բայց դու հացով աշխարհ եկած արարածների շարունակություն ես: Հացից հրաժարվելը քեզ համար նույնն է, թե ինքդ քեզնից հրաժարվես:

## 4. ԹԹԽՄՈՐԸ ՀԱՑԻ ԱՅԲՈՒԲԵՆՆ Է

Թթխմորը հացի այբուբենն է: Մինչև նրա հայտնագործումը հացը «անգրագետ» էր: Անխաշ խմորը թոնրի պատին կպչելիս չի եղել, ընկել է մոխրի մեջ ու դարձել կուտ, այսինքն՝ խոտան:

Հետո մարդը գտել է հացի մերանը՝ խաշը, որին նաև կոչում են թթխմոր: Թթխմորի հետ Հայոց աշխարհը լցվել է թոնիրներով:

## 5. ՄԵԿ ՏԱՐՈՎ ԶՐԿՈՒՄ ԷԻՆ ՀԱՑԻՑ

Այրարատ նահանգի Արշարունիք գավառում, Ախուրյան գետի աջ ափին, մի բերդաքաղաք է եղել՝ Բագարան անունով: Մեր թվականությունից առաջ երկրորդ դարում այս քաղաքի մոտ տնկել են Ծննդոց կոչվող նշանավոր անտառը: Այդ անտառից թեկուզ մի ծառ կտրողը Երվանդ արքայի հրամանով նետվում էր բանտ և այնտեղ մնում մեկ տարի: Բանտարկյալին տալիս էին զանազան ուտելիքներ և ջուր, բայց ոչ հաց: Մի ամբողջ տարի նա հացի համը չէր առնում և բանտից դուրս էր գալիս ուժասպառ:

— Դա ամենաարդար պատիժն է,— ասում էր Երվանդ արքան,— թող ծառ կտրողն իմանա, որ ծառը բնության համար նույնն է, ինչ մարդու համար՝ հացը:

## 6. ԿԱՐՄՐԱԹՈՒՇ ԲՈՔՈՆԸ

Փոքրիկ Սոսը կարմրաթուշ բոքոնն ավելի է սիրում, քան մատնաքաշը:

— Մայրի՛կ, դու որտեղի՞ց ես բերում այս հացը,— հարցնում է Սոսը:

— Խանութից:

— Ինչպե՞ս ես բերում:

— Ասում եմ՝ մեր տանը երկու խելոք բալիկներ կան՝ Սոսն ու նրա քույրը՝

Քնարը: Առանց հացի նրանք չեն կարող մեծանալ:

— Եվ բոքոնը համաձայնում է ու քեզ հետ գալիս մեր տո՞ւն:

— Այո՛:

— Իսկ եթե չգա՞:

— Չէ՛, տղա՛ս, միշտ կգա,— ասում է մայրն ու ավելացնում.— Բոքոնը գիտե, որ դու և Քնարը չարություն չեք անում:

Սակայն մի անգամ, տեսնելով, որ տանն ուրիշ մարդ չկա, Սոսը բոքոնի միջուկից գնդիկներ սարքեց և շպրտեց դեպի փոքրիկ քույրը:

Մի քանի օր անց մայրը հացի խանութ գնաց ու վերադարձավ ձեռնունայն:

— Ինչու՞ հաց չբերեցիր,— հարցրեց Սոսը:

— Բոքոնը չուզեց մեր տուն գալ:

— Ինչու՞:

— Ասում է՝ քո փոքրիկ Սոսը չարություն է անում, հացից գնդիկներ է սարքում և նետում քրոջ դեմքին: Ես բոքոնին ասացի, որ իմ Սոսը այդպիսի բան չի անում, նա ասաց՝ անում է, ես գիտեմ:

Սոսն հուզվեց:

— Մայրի՛կ, բոքոնը ճիշտ է ասել, գնա՛ ու ասա՛ նրան, որ այլևս այդպիսի բան չեմ անի, գնա ասա՝ թող չխռովի մեզանից ու գա:

## 7. ՔԱՂՑ, ՈՐ ՀԱԶԱՐ ՏԱՐՈՒՄ ՉԻ ՀԱԳԵՆԱ

Հայկական Կիլիկիայի ամենաայգեշատ վայրում 1166-ին մի վանք է հիմնվել և կոչվել Այգեկ, այսինքն՝ այգեշատ, այգեվետ: 1206 թվականից այստեղ է ապրել հայոց մեծ առակագիր Վարդանը, որն այս վանքի անունով էլ կոչվել է Վարդան Այգեկցի: 1212 թվականին նա այստեղ գրել է ամենայավ հայկազուն առակները, որոնց շնորհիվ աշխարհահանաչ դարձան և՛ ինքը, և՛ Այգեկ վանքը:

Մի օր ցորենաբարձ հազար ուղտով Այգեկ հասավ մի հարուստ իշխան: Վարդան Այգեկցուն նա ասաց.

— Ես ուզում եմ գնել քո բոլոր առակները: Ամեն մի առակիդ յոթ ուղտաբեռ ցորեն եմ տալիս: Հացասակավ այս տարում դու կդառնաս Կիլիկիայի ամենահարուստ մարդը:

— Քո ցորենով կարող եմ կշտացնել միայն փորս, բայց եթե զրկվեմ իմ առակներից, հոգուս քաղցը հազար տարում չի հագենա,— պատասխանեց առակագիրը և մերժեց իշխանին:







## 8. ՄԻ ՕՐՈՎ ՍՈՎԻ ՀԵՐՆ ԱՆԻԾԵՑԻ

Փոքր Հայքի մայրաքաղաք Սեբաստիան, որ միշտ կոչվել է հացի քաղաք ու շտեմարան, և մեծ սովերն անցել են նրա կողքով, խեղճացավ միայն մի անգամ: 1797 թվականի հունիսի 8-ին մորեխը հեղեղի պես վրա տվեց և ամայացրեց Սեբաստիայի բոլոր արտերը: Այդ աղետին ականատես պատմիչ Հովհաննես Սեբաստացին գրում է, թե սով եղավ և մեկ կիլոգրամ ցորենը վաճառվեց 35 դահեկանով:

Սովի այդ տարում սեբաստացի դարբին Նահապետ Նահապետենցը երկու ձիաբեռ ցորեն առավ, հաց թխեց և ընկրսեց հյուրասիրել անցնող ու դարձող համաքաղաքացիներին: Հաջորդ օրը նրա տանը մի կտոր հաց չմնաց:

— Դու այդ ի՞նչ արեցիր, Նահապե՛տ, — ասացին հարևանները:

— Մի օրով սովի հերն անիծեցի,— պատասխանեց Նահապետը:

## 9. ՇՈՌԲՈՒԼԱՂԻ ՑՈՐԵՆԻ ԴԱՇՏԸ ՀԻՆԳ ՀԱԶԱՐ ՏԱՐՈՎ ՄԵԾ Է ՔԵՈՓՍԻ ԲՈՒՐԳԻՑ

1934-ին Հայաստան այցելեց ակադեմիկոս, սելեկցիոներ, հացահատիկային բույսերի աշխարհահռչակ գիտակ Նիկոլայ Իվանովիչ Վավիլովը: Նա եղավ Շոռբուլաղ գյուղում, որն այժմ մտնում է Երևան քաղաքի Օրջոնիկիձեի շրջանի մեջ: Այս գյուղի կողքին հայտնաբերվել էր վայրի ցորենի մի դաշտ, որը համաշխարհային հետաքրքրության առարկա էր դարձել:

Նույն թվականի հուլիսի 24-ին ելույթ ունենալով Երևանի Կուլտուրայի տանը (ֆիլհարմոնիայի այժմյան փոքր դահլիճ), Վավիլովն ասաց.

— Շոռբուլաղի ցորենի դաշտը ամենահետաքրքրական տեղն է ամբողջ աշխարհում: Մարդու ձեռքով ստեղծված աշխարհի յոթ հրաշալիքներից միայն եգիպտական Քեոփսի բուրգն է պահպանվել, իսկ հնադարյան հացահատիկներից՝ Շոռբուլաղի ցորենի դաշտը: Վերջինս հինգ հազար տարով մեծ է Քեոփսի բուրգից:

# 10. ԱՐԻՍՏՈՏԵԼԻ ԵՎ ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑՈՒ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

Հույն մեծ փիլիսոփա, Ալեքսանդր Մակեդոնացու դաստիարակ Արիստոտելին մի անգամ հարցրին.

— Դու ինչո՞վ ես տարբերվում մարդկանց մեծ մասից:

— Նրանք ապրում են ուտելու համար, իսկ ես ուտում եմ ապրելու համար,— պատասխանեց իմաստասերը:

Հազար տարի հետո նույն հարցը տվեցին հայ մեծանուն գիտուն Անանիա Շիրակացուն: Նա պատասխանեց.

— Եթե կարողանային՝ բոլոր մարդիկ էլ կուտեին ապրելու համար:



# 11. ԼՈՒՍԻՆԵԻ ԵՐԱԶԸ

Մի անգամ Լուսինեն մորն ասաց.

— Մայրի՛կ, գիշերն ինչո՞ւ իմ բարձի տակ հաց չես դնում:

— Ինչու՞ դնեմ, աղջի՛կս:

— Որովհետև երազը բարձիս մոտիկ է: Այս գիշեր երազում քաղցած էի, ձեռքս տարա բարձիս տակ՝ հաց չկար:

# 12. ՄԱՏՆԱՔԱՇ

1930-ական թվականներին էր: Երևանը նոր-նոր մայրաքաղաքի կերպարանք էր ստանում: Մի անգամ Երևանի քաղսովետի գործկոմի նախագահ Արամայիս Երզնկյանը կանչում է հացթուխ Օգսենին և ասում.

— Հացի նոր տեսակ պիտի ստեղծել, այնպիսի հաց, որ արժանի լինի մայրաքաղաք Երևանին:

Երեք շաբաթ անց Օգսենը ներկայանում է Արամայիս Երզնկյանին և նրա առջև դնում երկարուկ, երեսին մատներով ակոսաձև նախշեր քաշած մի հաց:

— Տես, այնպիսի ակոսներ եմ արել, ոնց որ արտն է ունենում,— ասում է հացթուխը:

Երզնկյանը առնում է հացի համն ու ասում.

— Այո՛, համեղ հաց է, ակոսներն էլ գեղեցիկ են, հայ ժողովուրդը հազար-հազար տարի միայն ակոսի հետ է կապել իր երջանկությունը: Բայց թշնամին խանգարել է և ակոսները լցրել հայի ան-







մեղ արյունով: Հիմա մեր բախտի, մեր հողի տերն ենք: Մենք մեր ակոսները կդարձնենք հացավետ: Ակոսի մեջ մեր գոյության հազարամյա խորհուրդն է: Ի՞նչ կոչենք այս հացը:

— Մատնաքաշ, ակոսաձև նախշերը մատներով եմ քաշել,— ասաց Օգսենը:

— Գեղեցիկ անուն է, թող մատնաքաշ կոչվի,— համաձայնեց քաղաքագլուխը:

Այդ ժամանակվանից էլ Երևանի հացի գործարանները, ուրիշ տեսակների հետ, սկսեցին նաև մատնաքաշ թխել:

## 13. ՀԱՑԸ ՍՈՒՐԲ Է

Եգիպտոսում սկսել են ցորենի հաց թըխել հինգ հազար տարի առաջ: Եգիպտացիների աշխատանքը վարձատրվում էր հացով: Տղամարդկանց տալիս էին մեծ, կանանց ու երեխաներին՝ փոքր չափի հացեր:

Այդ ժամանակ Հայաստանի միապետն էր Հայկ Նահապետի պապ Թիրասը: Կարծես՝ ի հեճուկս եգիպտական օրենքների, Թիրասը հացի մասին այսպիսի հրովարտակ էր արձակել. «Հայոց աշխարհում մի բան կարելի է փոխանակել մի այլ բանով: Կարող ես ոսկով, արծաթով կամ պղնձով ամեն բան առնել: Կուզես ոչխարի դիմաց խոտ գնիր, խոտի դիմաց՝ ոչխար: Ամեն տեսակ ապրանք չափանիշ է, բացի հացը: Հացը սուրբ է, իսկ սրբությունը, ինչպես հայրենի հողը, անչափելի է»:

## 14. ԳԽՏՈՐ

Մի ժամանակ գխտորը եղել է Հայաստանում տարածված սև ներկատու բույսը:

Ասում են, շատ հնում գխտորը հոտաղ է եղել: Կեսօրին մաճկալը նրան տուն է ուղարկել հաց բերելու: Հոտաղը տուն է հասել, հետո առել հացը և շտապել դեպի դաշտ: Ճանապարհին սովածացել է, նստել ու կերել իր և մաճկալի բաժին ամբողջ հացը: Ուտելուց հետո գլխի է ընկել, որ ինքը վատ բան է արել, գուցե՝ ամենավատ բանն աշխարհում: Էլ ի՞նչ երեսով վերադառնա մաճկալի մոտ: Ամոթից դեմքը ծածկել է ձեռքերով և գլուխը դրել գետնին: Ու այլևս չի բարձրացել:

Այդ ժամանակվանից էլ սևերես հոտաղը դարձել է գխտոր:

Մարզադպրոցի բակում արդեն մարզումները են սկսել մոտ 40 պատանիներ ու աղջիկներ:

— Առավոտյան ընդհանուր ֆիզիկական պատրաստությունը տևում է մոտ մեկ ժամ: Հետո ջրային շփումներ... փոքրիկ նախաճաշը, և՝ դպրոց,— տեղեկացնում է մարզիչ Վալերի Հակոբյանը:

— Իսկ դասերից չե՞ն ուշանում...

— Համաձայն մեր «կանոնադրության»,— շտապում է պատասխանել Աշոտը,— եթե մեկ անգամ ուշացար դասից, երկու շաբաթ զրկված ես մարզումներից: Թիմում նման դեպք եղել է : Ճիշտ է, «հարգելի» պատճառ կար՝ Հրանտը պարզապես քնով էր անցել...

Թիմում հիմնականում ընդգրկված են 6—10-րդ դասարանցիները: Նրանք սովորում են Սևանի №№ 1, 2, 3, Լճաշեն, Ծամաքաբերդ գյուղերի դպրոցներում: Մարզիչ Վալերի Հակոբյանը հաճախ է այցելում դպրոցները, հետաքրքրվում իր սաներից յուրաքանչյուրի առաջադիմությամբ...

Մարզիչը համոզված ասում է.

— Եթե դու վատ ես սովորում, ծույլ ես, չես կարող լավ մարզիկ լինել:

Դասերից հետո փոքրիկ թիավարները նորից հավաքվում են մարզումների. ծանրամարտ, բասկետբոլ, լող, թիավարություն:

Հաջողություննե՞ր: Իհարկե կան:

Գյուղական մարզիկների կենտրոնական խորհրդի մրցումներում սևանցիները գրավեցին երկրորդ մրցանակային տեղը: Թիմի անդամներից մի քանիսն էլ հաջողությամբ են մասնակցել ՍՍՀՄ երիտասարդական խաղերին: Ավետիք Մալխասյանն ու Հրանտ Հովհաննիսյանը Հայաստանի չեմպիոններ են:

— Հուսով ենք,— ասում է մարզիչը,— շուտով մեր թիավարները դուրս կգան նաև մեծ «ջուր», կդառնան ՍՍՀՄ մրցանակակիրներ ու չեմպիոններ:

Մրցաշրջան 83-ում Երևանյան լճի ջրերը առաջին ակոսողները կլինեն թիավարության Հայաստանի գավաթի խաղարկման մասնակիցները: Նրանք անզիջում պայքար կմղեն բայդարկայով ու կանոեով մրցածներում խաղարկվող մրցանակներին տիրելու համար: Եվ ինչպես անցյալ տարի, այս անգամ էլ հուսանք, որ հաղթողների մեջ կլինեն նաև իրենց թիմակիցները:

ՊԱՎԵԼ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# Տուն Պուշկինի լեռնանցքում

Զառիվեր ճանապարհը, օձաձև ոլորվելով Գյառգյառ գյուղի մոտ, մեզ ուղեկցում է դեպի լեռնանցքը: Մեկ ու կես դար առաջ ինչպե՞ս է այս ճանապարհով անցել Ալեքսանդր Պուշկինը: Լեռների նույն փափուկ կորությունները, նույն բացսիրտ դաշտերն են, և երկինքն է կապույտ-կապույտ: Ես փնտրում եմ նրա նկարագրած պատկերները, որոնց ծանոթ եմ «Ճանապարհորդություն դեպի Արզրում» գրքից և չեմ գտնում: Նա գրել է. «Ես տեսա մի կողմում քարակույտեր, որոնք նման էին գյուղերի և գնացի նրանց մոտ: Պարզվեց, որ իսկապես, ես եկել էի հայկական գյուղ: Մի քանի կին, խայտաբղետ ցնցոտիներ հագներին, նստած էին գետնափոր խրճիթի տափակ կտրին: Ես մի կերպ բացատրվեցի: Նրանցից մեկն իջավ խրճիթը և ինձ համար պանիր, կաթ բերեց: Մի քանի րոպե հանգստանալով, ես առաջ գնացի և դիմացս, գետի բարձր ափին տեսա Գյառգյառ բերդը»: Այս տողերը գրվել են 1829 թվականին: Ժամանակին անճանաչելիորեն փոխվել է աղքատիկ շենը: Այժմ արդեն բարեկարգ ու նորոգ գյուղում գետնափոր խրճիթներն անցյալի հիշողություն են: Սակայն շարունակենք վերելքը մեծ գրողի հետ: «Երեք վտակ աղմուկով ու փրփրած, ցած էին թափվում բարձր ափից: Ես անցա գետով: Երկու եզ, սայլին լծած, բարձրանում էին զառիվեր ճանապարհով, մի քանի վրացի ուղեկցում էին սայլը: Որտեղի՞ց եք գալիս,— հարցրի նրանց:— Թեհրանից:— Ի՞նչ եք տանում:— Գրիբոյեդին:— Դա սպանված Գրիբոյեդովի մարմինն էր, որ փոխադրում էին Թիֆլիս»:

Ահա երկու ռուս մեծ գրողների հանդիպման վայրում կառուցվել է հուշաղբյուրը: Եվ ամեն տարի, արդեն 31-րդ անգամ, Պուշկինյան լեռնանցքում անց է կացվում ավանդական հավաք: Գալիս են հանրապետության քաղաքներից, շրջաններից ու գյուղերից, գալիս են իրենց հարգանքի տուրքը մատուցելու սիրելի գրողների հիշատակին: Եվ ինչպես միշտ, զուլալ աղբյուրի պես հորդում է պիոներական երգը, թնդում են կրակոտ պարերը, զնգում է պատանի ասմունքողների ձայնը: Բարեկամության հուշակոթողին դրվում են դաշտային բազմերանգ ծաղկեփնջեր:

Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 7. ՂՈՌԱԴԱՐԱՑԻ ԱՐՅՈՒՆՈՏ ՔԱՐԱՅՐՆԵՐԸ

Ձմռան ամիսներին, երբ սար ու ձոր ծածկված են ձյունով, մենք մեր որոնումները շարունակում ենք Մատենադարանի խաղաղ ընթերցասրահում՝ հին գրքերի էջերում որոնելով նորանոր քարայրներ:

Մի անգամ՝ Առաքել Դավրիժեցու «Պատմություն»-ում կարդացի մի դեպք, որը ցնցեց մեզ ու սկիզբ դրեց ամբողջ երկու տարի տևած մեր որոնումներին: Ահա թե ինչ է գրում պատմիչը Գառնիի մոտակա Յամաքաձորում (Ղոռադարա) տեղի ունեցածի մասին. «Ապա պարսից չարահնար ազգը հնարեց մի այլ հնար, և բաժանեցին իրենց զորքը երկու մասի, ելան ձորից և գնացին քարափի գլուխը: Եվ իրար կապելով բազում պարաններ՝ իջեցրին միմյանց և այսպես միմյանց գոտիից գոտի իջեցնելով, հասան այն գոտու գլխին, որում այրն էր: Եվ այստեղ չորս մարդու հագցրին երկաթե զրահներ ու արեցին նրանց երկաթապատ ոտքից մինչև գլուխ և յուրաքանչյուրի մեջքին կապեցին չորս-հինգ սուր, որպեսզի մեկը կոտրվելիս մյուսը պատրաստ լինի, ձեռքները տվեցին մերկ սուսերներ և կապեցին յուրաքանչյուրից երկու-երեք պարան: Ապա անբավ բարձրությունից վայր կախեցին նրանց մինչև եկան հասան այրին, մտան այրն և դիմելով դեպի արանց ու կանանց, սկսեցին մերկ սուսերով անխնա կոտորել նրանց, ինչպես գայլը ոչխարների մակաղատեղը մտնելով անխնա կոտորում է»:

Մենք որոշեցինք անպայման գտնել Յախշիխան այրը, որտեղ կատարվել էր այդ անլուր ողբերգությունը:

Երկար հարցուփորձ արինք գյուղացիներին: Նրանք ոչինչ չգիտեին ո՛չ քարայրի, ո՛չ էլ նրա պատմության մասին: Գլուխներն ազատե՛լու համար, ինձ ուղարկեցին հին որսորդ Արմենի տունը: Սա էլ իրեն հերթին խորհուրդ տվեց գնալ որսորդ Արտոյի մոտ:

Գնացի Արտոյի տունը: Շատ զարմացա, երբ առույգ որսորդի փոխարեն տեսա մի հաշմանդամ ծերունու: Դու մի ասի

հենց այս միթևանի ծերունին էր այն նշանավոր որսորդը, որը մի ձմեռվա մեջ յոթ գայլ էր սպանել:

— Հա՛, ես եմ, տղա՛ ջան, գիշերը բարձրանում եմ ծառը, ոչխարի նման սկսում եմ մայել: Գայլերը գալիս են, ես էլ սպանում եմ,— պարզ, հասարակ պատմեց նա: Լսողը կկարծեր, թե խոսքը ոչ թե գայլ, այլ գառ սպանելու մասին էր:

Ծանոթացանք: Երբ իմացավ, որ քարանձավներ եմ որոնում, պատմեցի Հաղպատի ձորում մեր գտած ձեռագրերի գաղտնարանների մասին, հին որսորդը ոգևորվեց, միակ ձեռքով փաթաթվեց ինձ ու համբուրեց: Անմիջապես մտերմացանք: Որսորդն արդեն ինձանից ոչինչ չէր թաքցնի: Այդպես էլ եղավ: Նա նախ պատմեց Ցամաքաձորի քարայրների մասին, հետո ավելացրեց.

— Դրանք ի՞նչ են որ: Մի օր արջի թակարդ դնելիս մի քարանձավ եմ տեսել, որի տեղը ոչ մեկը ո՛չ տեսել է, ո՛չ էլ լսել: Տղերք եմ ասել, որ բարձրանաք:

Ես անմիջապես հիշեցի Հաղպատի հազարամյա գրքերը: Ով գիտի, թե ինչ կարող է լինել այս նոր քարայրում:

Եկա քաղաք ու Հայկին պատմեցի: Էլ մինչև գարուն համբերող չկար: Մի կիրակի օր մենք մեքենայի մեջ լցրինք պարանները ու որսորդ Արտոյի հետ գնացինք սարերը:

Քարանձավը հազիվ գտանք: Արտոն քսան տարի այդ ձորը չէր մտել: Բարձր, երկնահաս շեկ ժայռ էր, մեջտեղը՝ մի սև անցք: Իսկույն երևում էր, որ փորված է: Թե՛ տեղանքի նկարագրությունը և թե՛ քարայրի դիրքը ժայռի մեջ լիովին համապատասխանում էին Դավրիժեցու գրածներին: Մի՞թե իսկապես գտել էինք Ցախչխան այրը: Հայկը սկսեց բարձրանալ: Ժայռը ճաքճքված էր ու խփած սեպը չէր պահում: Վերևից ընկնողի մեծ կտորը ականջը կմնար: Հիմա Հայկը խարխուլ ցցվածքներից բռնելով, կամաց սողում է վեր, ես էլ կանգնել եմ նրա տակ ու ձեռքերս վեր պարզել, որ ընկնելիս գոնե չթողնեմ միանգամից գետնին ընկնի: Մինչև նա բարձրացավ, ես վախից կիսամեռ եղա:

Հայկը երկու ժամում բարձրացավ, իսկ ես նրա ամրացրած պարանից բռնելով՝ հինգ րոպեում, մտանք քարայրը: Ավաղ, դա Ցախչխան այրը չէր, որտեղ հազար հոգի էր տեղավորվում:

Կլոր մի տարի մենք որոնեցինք Ցախչխան այրը:

Վերջապես մի օր Մասիսը Բերդաձորից եկավ ու հայտնեց, որ ինքն ու Վանոն գտել են Ղոռադարայի ամենամեծ քարանձավը: Կիրճերից մեկի՝ Ուղտակունքի ժայռերի մեջ քարանձավներ որոնելիս դիմացի լանջի ժայռերի մեջ տեսել էին նրա վիթխարի երախը: Նրանք իրենց հետ բերել էին այդ նորահայտ քարանձավի գծագրերը և պատմում էին, որ դա մի մեծ ու հիասքանչ այր է, որ գտնվում է Ուղտակունքի ձորում, այն նույն ձորում, որն իր համանուն գետի հետ սկիզբ է առնում Գեղամա լեռների Ուղտասար կոչվող երկգագաթ լեռան փեշերից: Խորենացին սրանց Ուղտի ակունքներ է անվանում:

Քարանձավի տեղն իմանալուց հետո, մի ազատ օր, ես մեն-մենակ գնացի Խոսրովի անտառ: Տղաներն ինձ էին վստահել նորահայտ քարայրի և Ցախչխան այրի նույնությունը պարզելու հարցը:

Հասա Ուղտակունք, մտա ձորի կուսական անտառն ու գնացի գազանների [illegible]ցած արահետով: Տղերքը պատմում էին, որ անձավի մուտքն արահետից երևում է: Մի կես ժամ որ քայլեցի, ծառերի միջից սևին տվեց անձավի երախը: Բարձրացա վերև, արդեն մի քանի մետր էր մնում, որ հասնեմ, հանկարծ քարանձավի մեջ բարձրացող մի հսկա ժայռի վրա տեսա հինգ-վեց հատ գորշ գույնի կենդանիներ: Նրանք իրենց համար ժայռի վրայով վերուվար էին անում, ինչպես ա[illegible]նիստները մարզական ժայռի վրա: «Սրանք գայլի ձագերն են, իսկ ծնողները քարանձավի մեջ են»,— կայծակեց ուղեղիս մեջ: Ետ դառնալն ուշ էր, իսկ ծառերն այնքան բարձր չէին, որ հնարավոր լ[illegible]ներ դրանց վրա բարձրանալ: Ստիպված ձեռքս տարա, որ դանակը հանեմ ուսապարկի գրպանից, բայց մեկ էլ նկատեցի, որ գազանները պոչ չունեն: Ծիծաղս եկավ. դրանք ոչ թե գայլի, այլ քարայծի ձագեր էին, որ ժայռի վրա մագլցել էին սովորում: Ես արծվի նման կռնչացի: Կռնչոցիս վրա անձավի խորքերից դուրս թափվեց քարայծերի հոտն ու շարվեց երկնքի ֆոնի վրա: Ուլիկները վազեցին ու կպան իրենց մայրերին: Հետո հոտն առաջնորդի ետևից դանդաղ ու անշտապ մագլցելով, աչքից կորավ:

Ես մտա քարանձավ ու ապշեցի նրա ահռելի չափերից: Քարայրի առաստաղի տակ հեշտ ու հանգիստ կտեղավորվի «Մայր Հայաստան» կոթողն իր պատվանդանով, այրի պատերին պահպան-

ված փոսերը վկայում էին, որ այդ ժայռեղեն ամրոցը ժամանակին բաժանված է եղել բազմաթիվ հարկերի: Հարկերից յուրաքանչյուրի բարձրությանը հավասար պատերի մեջ սենյակներ ու խորշեր կ փորված, կենտրոնում բարձրացող հսկա ժայռի վրա փորված պտուտակաձև սանդուղքը միացնում էր այդ բոլոր հարկերը: Խորքում մի քանի տեղ աղբյուրներ էին բխում: Այդ անձավը Յամաքաձորի միակ ամրոցն էր, որտեղ խմելու ջուր կար:

Անձավը լեռան մեջ խորանալով, բաժանվում էր երկու մասի, որոնք իրար էին միանում գաղտնի անցքով: Մուտքի երկու կողմերում, գլխապտույտ բարձրության վրա, անձավի մատույցները հսկող դիտակետերն էին: Նրանց մոտ կարելի էր բարձրանալ միայն ավերված սանդուղքով:

Քարանձավին մի հայացք ձգելն արդեն հերիք էր, համոզվելու համար, որ Յախշխան այրը սա է որ կա: Այստեղ ամեն ինչ համապատասխանում էր Առաքել Դավրիժեցու հայտնած տեղեկություններին:

Ես դուրս եկա անձավից ու սկսեցի զննել տեղանքը: Ահա այն տեղը, ուր դիրքեր են գրավել այրը պաշտպանող տղամարդիկ: Ավելի մոտիկ պաշտպանվելու տեղ չկա, իսկ ավելի հեռվում կռվելիս ողբի ձայնը քարանձավից նրանց չէր հասնի: Այստեղից էլ երևի պարսիկ քարագնացները բարձրացել են ձորի գլուխը: Իսկ որտեղի՞ց են պարաններով իջել ու մտել այրը: Ուղիղ այրի գլխից հնարավոր չէր իջնել՝ շատ էր բարձր: Եթե իջնելու ուրիշ տեղ չկա, ուրեմն սա Յախշխան այրը լինել չի կարող: Արդեն պատրաստվում էի հեռանալ, երբ հանկարծ հիշեցի քարայծերի հոտը, որը քարանձավից դուրս գալով անհետացավ: Գուցե հենց քարայծերի գնացած ճանապարհով են իջել: Մոտս պարան չկար, բայց այդ ենթադրությունը ստուգելու համար արժեր մի թեթև վտանգի դիմել: Ու ես զգուշորեն մագլցեցի նրանց հետքերով: Մագլցեցի այնքան, մինչև որ երևաց այն տեղը, որտեղից կարելի էր պարաններով իջնել և աննկատ մտնել այրը: Ուրեմն, իսկապես դա այն քարայրն էր, որտեղ թաքնվել էին ըմբոստ գառնեցիները:

Ես անձավը չափափորեցի և քառաչ վերադառնալով, տղաներին հայտնեցի իմ կարծիքը: Հետո ուրիշներն էլ եղան այդ քարանձավում և բոլորի կարծիքն էլ մեկ էր՝ վերջապես գտնվել է այն քարայրը, որի մասին արդեն հազարյա չորս հարյուր տարի գրում են, թե՛ հայ և թե՛ օտար հեղինակները:

Միայն մի բան էր մութ մնում մեզ համար, թե ինչո՞ւ անզեն ժողովրդին այդպես գազանաբար հոշոտող պարսիկները հանկարծ խաղաղվեցին և բոլորին չկոտորեցին:

Այս հարցում էլ մեզ օգնության եկավ Մատենադարանի գիտնականներից մեկը, ինձ տրամադրելով Ներսես Ակինյանի «Բաղեշի դպրոցը» գիրքը, որտեղ հեղինակը խնամքով հավաքել ու հրատարակել էր Բաղեշի նշանավոր դպրոցի պատմիչների տարեգրությունները: Այդ տարեգրություններից մեկը գրված էր Ներսես վարդապետ Մոխրաբերդցու կողմից և վերաբերում էր Ղռռադարայի արյունոտ դեպքերին:

«Դարձյալ պատմեմ ձեզ և այլ բան աղետի և ողբերգության: Գառնո, Այրիվանքի և Վանաստանի ամուր լեռներում բազում ժողովուրդ հավաքվել ու թաքնվել էր: Մինչդեռ մի բարձրաբերձ այրում ապահով ամրացած ու անհոգ նստել էր ժողովրդի մի մասը, հանկարծ տեսան, որ պարսից անօրեն զորքը սուսերամերկ նրանց մեջ թափանցեց և սկսեցին պարսկական սուրը գործ ածել: Իսկ քրիստոնյաները սրիահից կամովին իրենց վայր էին նետում անհուն բարձրությունից՝ և՛ կանայք, և՛ ծերեր, տղաները: Այնժամ մի ոմն նրանց միջից, երաժիշտ և քաջ փողհար, աղաչեց զինվորներին դադարեցնել կոտորածը: Եվ ինքը զուռնան բերանին դնելով ողորմ ձայնով երգեց դամբանական և գերեզմանական ողբը նոր մեռելների վրա, որ քարանձավի հատակին ոմանք մեռած և ոմանք հոգեվարքում ճապաղ արյան մեջ թավալվելով՝ ջուր էին խնդրում և ոչ ոք չէր արբեցնում նրանց: Այս որ տեսան անօրենները, ձեռքերը ծնոտին դրած աղիողորմ լացեցին, մանավանդ որ փողի ձայնը նրանց արտասուքը շարժեց:

Մեծ զղջում իջավ նրանց վրա, զղջացին իրենց մտքից ու ասացին, թե ինչ բարություն գործենք, որ աստված ազատի մեզ մեր գործած մեղքից...»

Յախշխան այրում ժողովված ժողովրդի մի մասի զերծ մնալը կոտորածից, ահա այսպես է բացատրում պատմիչը:

Հիմա մենք հաճախ ենք լինում Յամաքաձորում, որովհետև դեռ չենք ավարտել այնտեղի անձավների հետազոտումը:



# ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ 70

45 տարի առաջ «Հոկտեմբերիկ» ամսագրում տպագրվեց մի բանաստեղծություն «Մկան խրատը և կատվի դատը» վերնագրով։ Հեղինակը Սողոմոն Մկրտչյանն էր։ Նա ավարտել էր Արտաշատի շրջանի Նորաշեն գյուղի դպրոցը, ուսումը շարունակել Երևանի ուսուցչական ինստիտուտում և, գյուղ մեկնելով, նվիրվել մայրենի լեզվի ու գրականության դասավանդման պատվավոր գործին։

Հետագա տարիներին Ս. Մկրտչյանը Երևանում և հանրապետության մի շարք գյուղերում աշխատեց որպես ուսուցիչ, ապա՝ ուսմասվար ու դիրեկտոր, բայց երբեք չմոռացավ մանկագրի իր բարձր կոչումը։ Իսկ երբ արդեն փոքրիկ ընթերցողների կողմից ճանաչված բանաստեղծ էր, աշխատանքի անցավ «Պիոներ» ամսագրում և երկար տարիներ վարեց նրա գրականության բաժինը։

Ս. Մկրտչյանի «Առվակ», «Ծուշանի երազը», «Անմահական խնձորը», «Անթառամ ծաղիկներ», «Ջախորդ որսորդները» և այլ ժողովածուները մանուկ ընթերցողի սիրած գրքերից են։

Այս օրերին, երբ լրացել է բանաստեղծի ծննդյան 70 տարին, նա հաճախ է հյուր լինում մայրաքաղաքի և հանրապետության տարբեր շրջանների դպրոցներում ու մանկապարտեզներում։ Կյանքի երկար ճանապարհ անցած գրողն ու մանկավարժը իր ընթերցողներին ասելու շատ բան ունի։ Ընթերցողներն էլ սիրով են ունկնդրում բանաստեղծին և երկար կյանք ու ստեղծագործական նորանոր հաջողություններ մաղթում նրան։

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

## ՁԱԽՆ ՈՒ ԱՋԸ

Ձախ ձեռքն անչափ տխուր էր.
— Ասես անկոչ մի հյուր եմ.
Վատ բան թեև չեն ասում,
Պատիվ տալ էլ չեն ուզում։

Աջը թե.— Ի՞նչ է եղել,
Թանիդ թթու՞ են ասել,
Թե՞ ճաշը ես եմ կերել,
Ու քեզ բաժին չի հասել։

— Քո հարազատ եղբայրն եմ,
Նույն արյունից, նույն տնից,
Ինչո՞ւ քո բախտը չունեմ,
Ցածր են դասում ինձ քեզնից։

Քեզ հետ են միշտ բարևում,
Թե բարեկամ, թե ծանոթ,
Քեզ են հարգում, թեև ես
Ավելի եմ սրտին մոտ։

Առաջինն ես, գլխավոր,
Իսկ ես՝ միայն օգնական,
Առաջ գնալ չեմ կարող,
Փակել ես դու իմ ճամփան..

Աջ ձեռքը թե.— Իզուր ես
Նախանձում քո եղբորը,
Ծանր գործերն այդ ո՞վ է
Անում հապա ողջ օրը։

Ե՛կ ինձնից շատ աշխատիր,
Պատիվն էլ դու՛ ստացիր։
Ես էլ, եղբա՛յր պատվարժան,
Թող լինեմ քեզ օգնական։





# ՈՒՍՈՒՄՆԱ–ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿՈՄԲԻՆԱՏ

## ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Մեծ բախտավորություն է, երբ մարդն իրեն իր տեղում է զգում, զգում է անփոխարինելի։ Բայց կյանքում սեփական տեղը գտնելու համար միայն ցանկանալն ու երազելը բավական չէ։ Բոլորս էլ ինչ-որ մի տարիքում երազել ենք տիեզերագնաց, օդաչու, հեռավոր նավարկության նավապետ, մեծ դերասան կամ էլ աշխարհի չեմպիոն դառնալ։ Սակայն հաջողվել է դա ոչ բոլորին։ Պատահում է նաև, որ մարդ հայտնվում է մի տեղում, որն այսպես ասած, պատկանում է ուրիշի։ Նման վիճակում գտնըվող դերասանին կամ երգչին ասում են՝ ապաշնորհ է, բժշկին, վարորդին չեն վստահում, գիտնականին չեն հարգում և այլն։ Եվ չխուսափենք, մի անգամ էլ կրկնենք շատ ասված այս խոսքը՝ վատ մասնագիտություն չկա, կան լավ ու վատ մասնագետներ։ Սոցիալիստական աշխատանքի հերոս է դառնում և՛ ակադեմիկոսը, և՛ բանվորը, և՛ օդաչուն, և՛ ուսուցիչը… Պարզապես պետք է ճիշտ կողմնորոշվել, պետք է յուրաքանչյուրն իր տեղը գտնի։ Դրա համար անհրաժեշտ է ոչ միայն լավ սովորել, հիմնովին յուրացնել դպրոցական պարտադիր ծրագրի առարկաները, այլև բարձր դասարաններում ավելի մոտիկից ծանոթանալ մի շարք մասնագիտությունների, աշխատել արտադրության, գիտության և այլ բնագավառներում։ Հենց դրա կարևորությունն է շեշտել Վ. Ի. Լենինը. «Չի կարելի պատկերացնել ապագա հասարակության իդեալը՝ առանց ուսուցումը արտադրական աշխատանքի հետ շաղկապելու»։ Ավելի հաջող այդ գործին ծառայում են ուսումնաարտադրական կոմբինատները։ Երևանում դրանք վեցն են, որ 102 դպրոցների 10481 աշակերտներ 33 մասնագիտություն են ուսումնասիրում (խառատի, փականագործի, հյուսնի, քիմիկ-լաբորանտի,



...ՀՄ-ի մոնտաժողի, խոհարարի, ռելե հավաքողի, ռադիոտեխնիկի և այլն) 57 արտադրամասերում:

Լավագույններից է Մյասնիկյանի շրջանի ուսումնաարտադրական կոմբինատը, որը գոյություն ունի արդեն հինգ տարի: Այստեղ են հաճախում շրջանի բոլոր տասնհինգ դպրոցների իններորդ և տասներորդ դասարանցիները: Կոմբինատում գործում են վեց արտադրամասեր (մեքենաշինական գծագրության, ռադիոէլեկտրոնիկայի, կարի ու տրիկոտաժի, ավտոգործի, խոհարարության, պոլիգրաֆիայի), որ աշակերտները ծանոթանում և տիրապետում են ինը մասնագիտության:

Շրջանավարտների հիսուն տոկոսը ստանում է մասնագիտական որակավորում՝ հատուկ վկայական, մասնագիտությամբ աշխատելու իրավունքով: Վկայականը տրվում է ավարտական քննությունները հաջող հանձնելու դեպքում: Քննական հանձնաժողովի կազմում ներգրավվում են նաև այն բազային ձեռնարկությունների ներկայացուցիչները, որ հետագայում կոմբինատի որակավորում ստացած սաներից շատերը աշխատանքի են անցնում:

Ամեն տարվա ապրիլին կամ մայիսին կոմբինատում անց է կացվում բաց դռների օր: Հրավիրվում են շրջանի բոլոր դպրոցների 8-րդ դասարանցիները՝ իրենց ծնողների և դասղեկների հետ միասին: Շենքի միջանցքներում այդ օրը բացվում է ցուցահանդես՝ ցուցադրվում են տասներորդ դասարանցիների դիպլոմային և իններորդ դասարանցիների ստուգարքային աշխատանքները: Ութերորդ դասարանցիները դիտում են ցուցահանդեսը, շրջում են արտադրամասերում և, խորհրդակցելով ծնողների ու դասղեկի հետ՝ որոշում են, թե որ մասնագիտությունը յուրացնեն:

ՍՏԵՓԱՆ ԶԱՔԱՐՅԱՆ

## ՋԵՅՄՍ ԹԸՐԲԸՐ

# ՈՒՐՎԱԿԱՆ ԷՐ ՄՏԵԼ ՏՈՒՆ



Գիշերվա մեկն անց քառորդի մոտ ոտնաձայներ լսեցի: Այդ ոտնաձայները համաչափորեն պտտվում էին ճաշասենյակի սեղանի շուրջը: Մայրս քնած էր վերնահարկի սենյակներից մեկում, եղբայրս՝ Հերմանը՝ մյուսում: Պապս քնած էր ձեղնահարկում, ընկուզենուց պատրաստված մահճակալի վրա:

Հենց նոր էի ոտքս դուրս դրել լողարանից և սրբիչով սրբվում էի, երբ լսեցի ոտնաձայներ: Ոտնաձայներն ասում էին, որ մեկր արագորեն քայլում է ներքնահարկի ճաշասեղանի շուրջը: Լույսը լուսավորում էր լողասենյակից ներքև, ճաշասենյակ տանող աստիճանները: Ես տեսնում էի դարակների վրա դասավորված ափսեների աղոտ փայլը: Իսկ սեղանը չէի տեսնում: Ոտնաձայները պըտտվում ու պտտվում էին սեղանի շուրջը և քայլերի ծանրության տակ հատակի տախտակները համաչափորեն ճռռում էին: Ինձ սկզբում թվաց, թե հայրիկն է կամ Ռոյ եղբայրս, նրանք Ինդիանապոլիս էին մեկնել և ուր որ է գալու էին: Այնուհետև մտածեցի, չլինի՞ գող է: Իսկ հետո, բավականին ուշ, գլուխս մտավ, թե՝ կարող ուրվական է մտել տուն:

Ես ոտնածայրերիս վրա Հերմանի սենյակը մտա:

— Սը՜ս,— շշնջացի ես, մթության մեջ ցնցելով նրան:

— Վա՜յ,— ասաց նա, խուզարկուի ցածրը, հուսահատ տոնով:

Հասկացրի, թե ով եմ:

— Ներքևում ինչ-որ բան կա,— ասացի:

Նա վեր կացավ ու հետևեց ինձ: Մենք հասանք աստիճանների ծայրին ու սկսեցինք միասին ականջ դնել: Ոչ մի ձայն: Քայլերը դադարել էին: Հերմանը տագնապով ինձ նայեց: Ես բոլորովին մերկ էի, սրբիչը մեջքիս փաթաթած: Նա նո-

րից ուզեց անկողին մտնել, սակայն ես նրա թևը բռնեցի.

— Ներքևում ինչ-որ բան կա,— կրկնեցի ես:

Ու հանկարծ ոտնաձայներն նորից բռնկեցին շրջագծել ճաշասենյակը, կարծես մեկը վազում էր: Ձայներր աստիճաններով վեր, դեպի մեզ ուղղվեցին, ծանրորեն, միանգամից երկուական աստիճան բարձրանալով: Լույսը դեռ աղոտ կերպով լուսավորում էր աստիճանները: Ոչ ոք չէր երևում, միայն ոտնաձայներն էին լսվում: Սարսափահար Հերմանը ներս ընկավ իր սենյակը և դուռն ուժգնորեն փակեց: Իսկ ես աստիճանների վերևի դուռը ծածկեցի ու ուրքս էլ դեռ հենեցի դռանը: Մեկ երկարաձիգ րոպեից հետո դուռը կամացուկ բացեցի: Ոչ ոք չկար այնտեղ: Ոչ մի ձայն չէր լսվում:

Դռների շրխկոցը արթնացրեց մայրիկին: Նա դուրս նայեց իր սենյակից:

— Ի՞նչ եք անում, տղանե՛ր,— հարցրեց նա:

Հերմանը, վերջապես, համարձակվեց իր սենյակից դուրս գալ:

— Ոչինչ,— կոպտորեն պատասխանեց նա, բայց երեսի գույնը թռել էր:

— Իսկ ի՞նչ վազվզոց էր ներքևում,— շարունակեց հարցաքննել մայրիկը:

Ը՞հը, ուրեմն նա էլ էր լսել ոտնաձայները: Մենք միայն նայեցինք նրան:

— Գողե՞ր,— բղավեց նա ակամայից:

Ես ուզեցի հանգստացնել նրան, փորձելով ցած իջնել:

— Արի՛, Հերմա՛ն,— կանչեցի ես:

— Ես մայրիկի մոտ կմնամ,— կմկմաց նա,— նա շատ է հուզված:

Ես նորից ետ եկա:

— Մի՛ աստիճան անգամ չիջնեք,— հրամայեց մայրիկը,— պետք է ոստիկան կանչել:

Բայց, քանի որ հեռախոսը ներքևում էր, ես չէի էլ պատկերացնում, թե ոստիկան ինչպե՞ս ենք կանչելու, ոչ էլ ուզում էի, որ կանչենք: Բայց մայրիկը արագորեն կայացրեց իր հերթական տարօրինակ որոշումներից մեկը:

Չմոռանամ ասել, որ մայրիկի ու հարևանի՝ ոմն պարոն Բոդվելի, ննջարանների լուսամուտները ուղիղ իրար էին նայում: Մի նեղ արահետ էր բաժանում երկու տներն իրարից: Պարոն Բոդվելը թոշակառու վարագիչ էր և ապրում էր իր տիկնոջ հետ: Մի քանի տարի էր, ի՞ Բոդվելը բավականին վատ վիճակում էր. տկարության «նոպաներ» էր ունենում: Մեր շրջապատում բնակվող ամեն ծանոթ որևէ նոպա ունի:

Եվ ահա մայրիկը բացում է լուսամուտն ու, վերցնելով կոշիկը, շպրտում է հարևանի լուսամուտի ապակուն: Ապակին զրնգոցով փշրվում է և ներս է թափվում:

Գիշերվա երկուսին մոտ էր արդեն, և լուսին էլ չկար: Սև ամպեր էին կախվել երկնքից: Մի րոպեից պարոն Բոդվելն արդեն լուսամուտի մոտ էր, բղավում էր, անպատվում, բռունցքներն էր թափահարում: «Մենք կծախենք տունն ու Պեորիա կըվերադառնանք»,— լսվում էր տիկին Բոդվելի ձայնը:

— Գողե՛րը,— բղավեց մայրիկը:— Տանը գողե՛ր կան:

Հերմանն ու ես չէինք համարձակվում նրան ասել՝ «ոչ թե գողեր, այլ՝ ուրվականներ», գիտեինք, որ ավելի շատ ուրվականներից կվախենա մայրիկը, քան գողերից: Սկզբում Բոդվելին թվաց, թե գողերն իր տունն են մտել, իմանալով ինչն ինչոց է, վերջնականապես խաղաղվեց և իր մահճակալի մոտ գտնվող միջքաղաքային հեռախոսով ոստիկաններ կանչեց:

Ոստիկանությունը զարմանալի արագությամբ տեղ հասավ, մեկ «Ֆորդ» մակնիշի փակ մեքենա՝ լեփ-լեցուն, երկուսը՝ մոտոցիկլներով, մեկ ժամապահ մեքենա՝ մեջը մոտ ութ մարդ, և մի քանի լրագրող: Նրանք ծեծում էին մեր տան դուռը: Լապտերներր լույսի ցոլքեր էին գցում պատերին, բակի կողմը, մեր և Բոդվելի տների միջև ձգված անցուղուն:

— Բա՛ց արեք,— բղավեց մի ահարկու ձայն,— մենք շտաբի մարդիկ ենք:

Ես ուզեցի ցած իջնել և բացել դուռը, քանի դեռ նրանք իրենք չէին այդ արել, բայց մայրիկը թույլ չտվեց:

— Հագիդ ոչինչ չկա,— ասաց նա,— ցրտից կմեռնես:

Ես սրբիչը ավելի ամուր փաթաթեցի վրաս: Վերջապես ոստիկաններր ուսերով հարվածեցին մեծ, ծանր դռանն այնպես, որ հաստ ապակին կոտրվեց: Ես լսում էի, թե փայտն ինչպես էր ջարդվում, ապակին փշրվում շքամուտքի հատակին: Նրանց լապտերների լույսերը խաղում էին հյուրասենյակով մեկ, խաչաձևվում ճաշասենյակում, լցնում էին ողջ տունն ու աստիճանների ծայրին խփելով՝ վեր բարձրանում: Ոստիկանները հանդիպեցին ինձ հենց այդտեղ՝ աստիճանների ծայրին, սրբիչով փաթաթված: Ծանրամարմին մի ոստիկան աստիճաններով վեր վազեց:

— Դու ո՞վ ես,— խստորեն հարցրեց նա:
— Ես այստեղ եմ ապրում,— պատասխանեցի ես:
— Հը՞մ, ի՞նչ է, շա՞տ ես շոգում:
Պետք է ասեմ, որ բավականին ցուրտ էր: Ես գնացի իմ սենյակը և տաքատս հագա: Դուրս գալիս մի այլ ոստիկան դեմ արեց կողքիս:
— Ի՞նչ ես անում այստեղ,— բղավեց նա:
— Ես այստեղ եմ ապրում,— կրկնեցի ես:
Հերթապահ սպան զեկուցեց մայրիկին.
— Տիկի՛ն, որևէ շունչ չկա մոտերքում, երևի փախե՞լ է արդեն: Ի՞նչ տեսք ուներ:
— Երկուսը կամ երեքն էին,— բացատրեց մայրիկը:— Դեսուդեն էին ընկել, դռներն էին բացուխուփ անում:
— Ծիծաղելի է,— ասաց ոստիկանը,— ձեր տան բոլոր դռներն ու լուսամուտները աքցանի մեջ առնվածի պես ամուր փակված են ներսից:
Ներքևում լսվում էր մեկ ուրիշ ոստիկանի թփթփոցը: Ոստիկանները շրջում էին ամեն տեղ, դռները կրնկի վրա բացել էին, դարակները դուրս գցել, լուսամուտները բացել ու տեղահան էին անում կահույքը: Մի քանի ոստիկան հայտնվեցին նախամուտքի աստիճանների մթության միջից: Նրանք սկսեցին ուսումնասիրել հատակը, մահճակալները պատերի տակից մի կողմ հրեցին, հագուստները դուրս շպրտեցին պահարաններից, դարակներից հանեցին ճամպրուկներն ու տուփերը: Նրանցից մեկը մի հին կիթառ գտավ, որ Ռոյն էր շահել ինչ-որ վիճակախաղում:
— Հապա մի նայի՛ր, Ջո՛,— մեծ թաթով ծնգծնգացնելով՝ ասաց նա:
Ջո անունով ոստիկանը վերցրեց այն ու շուռ ու մուռ տվեց:
— Սա ի՞նչ է,— հարցրեց նա ինձ:
— Սա մի հին կիթառ է, որի վրա քնում էր մեր ծովախոզուկը,— պատասխանեցի ես:
Եվ դա ճիշտ էր: Մի ժամանակ մենք ծովախոզուկ ունեինք, որը այլ տեղ չէր քնում կիթառի գոգից բացի, բայց այլ պարագաներում ես այդ մասին չէի էլ ասի: Ջոն և մյուս ոստիկանը երկար նայեցին ինձ: Նրանք կիթառը նորից դարակի վրա դրեցին:
— Ոչ մի հետք չկա,— հայտարարեց այն ոստիկանը, որն առաջինն էր խոսել մայրիկի հետ:
— Այս տղան,— ինձ մատնացույց անելով՝ ասաց նա մյուսներին,— մերկ էր: Տիկինն էլ, կարծես, հիստերիկ է:
Բոլորը գլխով արեցին՝ ի նշան համաձայնության, բայց ոչինչ չասացին, միայն նայեցին ինձ: Մի պահ քար լռություն տիրեց: Հենց այդ ժամանակ ձեղնահարկից ճռռոց լսվեց: Պապիկն էր շուռ ու մուռ գալիս անկողնում:
— Դա՞ ինչ ձայն է,— զգուշացավ Ջոն:
Հինգ թե վեց ոստիկան դեպի ձեղնահարկի դուռը ցատկեցին ավելի շուտ, քան ես կարող էի միջամտել կամ որևէ բացատրություն տալ: Ես ենթադրում էի, որ շատ վատ կլինի, եթե առանց զգուշացնելու նրանք ներս ընկնեն պապիկի սենյակը. իհարկե, զգուշացնելու դեպքում էլ շատ բան չէր փոխվի: Պապիկս այնպիսի վիճակի էր հասած, որ գլուխն էր մտցրել, թե գեներալ Միդեի մարդիկ ինչ-ինչ բանից ահաբեկ, փախչում կամ դասալքում են:
Երբ ես ձեղնահարկ հասա, բանը բանից անցել էր: Պապիկի խելքին փչել էր, թե ոստիկանները Միդեի բանակի դասալիքներն են և փորձում են իր մոտ թաքնըվել: Նա անկողնուց դուրս էր թռել, փլանելից երկար գիշերազգեստով ու բրդյա ոտաշորով, գլխին գիշերային թասակ և կաշվե բաճկոնակը հագած: Իհարկե, ոստիկաններն անմիջապես գլխի ընկան, որ այդ գազազած, սպիտակահեր ծերուկը այս տանն է ապրում, բայց միջոց չունեցան այդ ասելու:
— Ե՛տ դարձեք, շու՜ն շանորդիք,— բղավում էր պապիկը,— ե՛տ դարձեք ձեր զորամասերը, վախկո՛տ անասուններ:
Այդ ասելով նա կիթառ գտած սպային այնպիսի մի պպտակ հասցրեց, որ սա վայր ընկավ: Մյուսները ետ քաշվեցին, բայց ոչ այնքան արագ: Պապիկը ճարպկորեն ճանկեց ատրճանակը կիթառը ձեռքն առած ոստիկանից և կրակ բացեց: Մի պահ թվաց, թե կրակոցի ձայնից գերանները ճրտճրտացին: Ողջ ձեղնահարկը ծխով լցվեց: Մի ոստիկան հայհոյեց ու ձեռքն ուսին տարավ: Ինչևէ, մենք բոլորս ցած իջանք նորից և դուռը փակեցինք պապիկի վրա: Մթության մեջ նա կրակեց մեկ թե երկու անգամ ևս և կրկին անկողին մտավ:
— Պապիկս էր,— շնչակտուր լինելով բացատրեցի ես Ջոյին,— նա կարծում է, դուք դասալիքներ եք:
— Այդպես էլ հասկացանք,— փնթփնթաց Ջոն:
Ոստիկանները չէին ուզում հեռանալ ա-

ռանց մեկնումեկին ճանկած տանելու, հասկանալի է, պապիկից բացի: Այդ օրը քաոսային գիշեր էր նրանց համար: Եվ ակնհայտ էր, որ նրանք չէին ցանկանում «վռնդված» լինել: Ինչ-որ չափով ես էլ էի նրանց հետ համամիտ: Նորից սկսեցին քրքրել իրերը: Լրագրողներից մեկը՝ նիհար մի մարդ, մոտեցավ ինձ: Ուրիշ բան չգտնելով ես հագել էի մայրիկի վերնաշապիկներից մեկը: Նա ինձ նայեց կասկածով ու հետաքրքրությամբ:

— Ի՞նչ է նշանակում այս ամբողջ իրարանցումը, բարեկամս,— հարցրեց նա:

Ես որոշեցի անկեղծ լինել:

— Ուրվականներ էին եկել,— շշնջացի ես:

Նա երկար նայեց ինձ, կարծես մանրածախ վիճակախաղի ավտոմատ էր կանգնած իր առջև, որի մեջ փող էր գցել և դիմացը ոչինչ չէր ստացել, ապա հեռացավ: Ոստիկանները հետևեցին նրան, իսկ նա, որի վրա պապիկը կրակել էր, բռնել էր նոր վիրակապած թևը և հայհոյում ու յուտանք էր թափում պապիկի գլխին:

— Գնում եմ ետ վերցնելու ատրճանակս այդ խելքը թռցրածից,— հայտարարեց կիթառը գտած ոստիկանը:

— Հա՞, իսկապե՞ս,— ծաղրեց Ջոն:— Է՞լ ով է ուզում նորից այցելել նրան:

Ես խոստացա հաջորդ օրը ատրճանակն ինքս ոստիկանատուն տանել:

— Ի՞նչ էր պատահել այն ոստիկանին,— հարցրեց մայրիկը, երբ նրանք գնացին:

— Պապիկը կրակեց նրա վրա,— ասացի ես:

— Ինչո՞ւ:

Ես ասացի, որ նրան դասալիք էր կարծել:

— Ի՜նչ ես ասում, չի կարող պատահել: Այնպիսի հաճելի տեսք ուներ այդ երիտասարդը:

Հաջորդ օրն առավոտյան նախաճաշի ժամանակ պապիկը շատ թարմ տեսք և կատակելու տրամադրություն ուներ: Սկզբում մենք կարծեցինք, թե կատարվածի մասին մոռացել է, բայց ոչ: Սուրճի երրորդ գավաթն էր խմում, երբ Հերմանին ու ինձ նայելով, հարցրեց.

— Այդ ոստիկաններն անցյալ գիշեր ինչո՞ւ էին պտտվում տան շուրջը:

Ա՜յ թե ինչպես նա բռնվեց, ա՜յ թե ով է եղել գիշերվա ուրվականը:

**Անգլերենից թարգմանեց Ռ. ԱՂՎԱՆՅԱՆԸ**



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# Արդյո՞ք ես ընկերասեր եմ

(Երևանի № 172 միջն. դպրոցի աշակերտների շարադրություններից)

Ես մի ընկեր ունեմ, անունը Արամ է: Նրա ամենասիրած առարկան ֆիզիկան է: Հաճախ է տանը փորձեր անում: Մեր դասարանցիները նրան կատակով անվանում են ֆիզիկոս Արամ: Չհասկացած հարցով ով էլ Արամին դիմում է, նա միշտ սիրով է օգնում: Իսկ ինչքա՜ն հետաքրքիր գրքեր է Արամը տվել ինձ կարդալու:

Մի անգամ ֆուտբոլ էինք խաղում: Իմ հարվածով գնդակը կպավ մեկի պատուհանին և ապակին կոտրվեց: Բնակիչները իսկույն դուրս թափվեցին ու սկսեցին հարցնել երեխաներին, թե ո՞վ կոտրեց: Ես ինձ կորցրել էի: Մի անկյուն էի քաշվել, չգիտեի ինչ անեի: Արամը տեսնելով իմ շփոթմունքը, առաջ եկավ և ասաց, որ ապակին ինքն է կոտրել: Մեծերը իմ փոխարեն նրան պատժեցին: Այդ օրվանից մեր ընկերությունն ավելի ամրապնդվեց: Իմ կարծիքով Արամն իսկական ընկեր է, իսկ ե՞ս...

Մի անգամ մեր դասարանցի մի աղջիկ մեզ առաջարկեց աշխարհագրության դասից փախչել: Ինձ էլ ասաց, թե հայրիկս դրսում մեքենայով սպասում է: Երբ ամբողջ դասարանով դպրոցից դուրս եկանք, մենք նրան չտեսանք: Պարզվեց, որ մեր գնալուց հետո նա վերադարձել է, նստել աշխարհագրության դասին: Ուսուցչուհու հարցին, թե ինչո՞ւ ես մենակ, նա ասել է՝ դասարանի բոլոր երեխաները կազմակերպված փախել են ձեր դասից, ես եմ մնացել: Ի՞նչ անուն տալ այս արարեմ մնացել: Ի՞նչ անուն տալ այս արարքին:

Ամառային արձակուրդներին էր: Գնացի խանութ գնումներ կատարելու: Ճանապարհին հանդիպեցի ընկերուհուս: Հեծանիվ էր քշում: Նա ինձ իր հեծանիվով տարավ խանութ: Վերադարձին հեծանիվը ես էի վարում, հանկարծ շփոթվեցի ու երկուսս էլ վայր ընկանք: Նրան ոչինչ չեղավ, իսկ իմ ոտքը կոտրվել էր: Երկար ժամանակ ես քայլել չէի կարողանում: Ընկերուհիս ամեն օր գալիս էր մեր տուն ինձ տեսնելու: Երբ արդեն ոտքս լա-

## ՄԵՐ ՓՈՍՏԻՑ

... Երկար դասամիջոցն էր:

— Ռուզա՛ննա, հանրահաշվի տետրըդ տու՛ր, տնային աշխատանքը չեմ կատարել,— հանկարծ հիշեց Նունեն:

Ռուզաննան տետրը տվեց, որովհետև չէր ուզում ,որ Նունեն իրենից նեղանար:

Սակայն մի օր էլ սովորականի նման, երբ Նունեն երկար դասամիջոցին նորից Ռուզանից տետր ուզեց տնային աշխատանքը արտագրելու, Ռուզաննան ասաց.

— Նունե՛, այս երկար դասամիջոցին ե՛կ միասին հանրահաշիվ պարապենք, տետրս քեզ տալու համար ես չեմ դժվարանում, այլ ուզում եմ, որ դու էլ ինքնուրույն կարողանաս վարժությունները լուծել: Չէ՞ որ ես ամեն րոպե քո կողքին չեմ լինելու, որ տետրըս վերցնես:

Նունեն չկամեցավ պարապել: «Անընկերասեր, պարծենկոտ»,— նետեց ու նեղացած հեռացավ:

**ԾՈՂԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ**

Մասիսի շրջանի Մարմարաշեն գյուղի դպրոց

Խառնակիչ մեկը պատճառ դարձավ, որ ես ու ընկերուհիս՝ Աննան խռովենք: Դրսում հանդիպելիս ճանապարհներս թեքում էինք: Նույնիսկ չէինք համարձակվում նայել իրար:

Մի օր, երբ դպրոցի բակում վազեցի սառույցի վրայով, սայթաքեցի և ընկա: Աննան, որ մոտերքում էր, անմիջապես վազեց դեպի ինձ, օգնեց կանգնելու: Այդ պահին մեր խռովությունից հետք անգամ չէր մնացել: Եվ ահա մենք նորից միասին ենք: Այն խառնակիչը (անունը չեմ տալիս, ո-

վացել էր, միասին էինք խաղում մեր բակում: Եվ երբ եկավ սեպտեմբերի մեկը, սկսեցինք միասին դպրոց գնալ-գալ, դասերը միասին պատրաստել: Մինչև հիմա էլ ինչ հարցում դժվարանում եմ՝ նա ինձ օգնում է: Լավ է լավ ընկեր ունենալը:

Ես շատ եմ սիրում մեր դասարանը: Բայց ափսոս, մեր դասարանում հաճախ են իրար վիրավորում թե՛ աղջիկները և թե՛ տղաները: Աղջիկները՝ ավելի շատ: Նրանք մտածում են, թե մենք՝ տղաներս իրենց ատում ենք, բայց այդպես չէ, մենք ուզում ենք իրենց հետ համերաշխ լինել, բայց իրենք մեզ չեն հասկանում և արհամարհանքով են նայում մեզ:

Ես մաթեմատիկայից թույլ էի: Մի անգամ մենք մաթեմատիկայից ստուգողական աշխատանք գրեցինք: Ես «3» ստացա, իսկ ընկերուհիս՝ Նարինեն՝ «5»:

Նա երբ տեսավ «3» եմ ստացել, ասաց.

— Վաղվանից եկ իրար հետ պարապենք:

Եվ մենք սկսեցինք պարապել: Ես արդեն մաթեմատիկայից բարձր գնահատականներ էի ստանում: Իսկ երբ նորից ստուգողական աշխատանք գրեցինք, «5» ստացա: Շնորհակալ եմ Նարինեից:

---

րովհետև նա հետո զգաց և ուղղեց իր սխալը), շատ զարմացավ, երբ Աննայի հետ միասին մտանք դասարան:

Օրեր անց, բոլորս էլ տխրեցինք, երբ Աննան հայտնեց, թե ուսումը շարունակելու է Ջովաարի դպրոցում:

Իրարից չէինք հեռանում, միշտ խոսում էինք այն մասին, թե ինչպես ենք առանձին-առանձին մեր օրերն անցկացնելու:

Երբ նա արդեն գնացել էր, ես ինձ զգացի տխուր ու մենակ... Սակայն նա ինձ չմոռացավ և միշտ նամակ էր գրում: Ահա այսքանը իմ բարի և հավատարիմ ընկերուհի Աննա Դավթյանի մասին:

**ՆԱՐԻՆԵ ՂՈՒԿԱՍՅԱՆ**
**Հոկտեմբերյանի շրջան, Նոր-Կեսարիայի դպրոց**


Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ԴՎԻՆ



ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Դվին բլուրի վրա բնակավայր է եղել դեռևս պղնձե դարի սկզբին, մ.թ.ա. 5-րդ հազարամյակում: Պահպանվել են մ.թ.ա. II—I հազարամյակների կիկլոպյան հսկա պարիսպների հետքեր: Բնակավայրը գոյատևել է նաև Վանի թագավորության շրջանում: Պահպանվել են նախաքրիստոնեական ժամանակաշրջանի կրոնական շինությունների հետքեր և առարկաներ, հեթանոսական դամբարանադաշտը՝ քարե արձանների ու քանդակների բեկորներով, հեթանոսական տաճարի կրակարանի հետքեր:

Այն որպես քաղաք ու մայրաքաղաք հիմնդրվել է 4-րդ դարի 30-ական թվականներին, երբ հայոց Խոսրով Կոտակ թագավորը (332—338 թթ.) արքունիքը Արտաշատից տեղափոխեց այստեղ և Դվինը հայտարարեց նոր մայրաքաղաք: Պատճառը Արտաշատի վատառողջ կլիման էր. քաղաքը օղակող ճահիճները, որոնք ոչ միայն գարշահոտություն էին տարածում, այլև բազմաթիվ մահաբեր հիվանդությունների պատճառ դառնում: Խոսրովը նոր մայրաքաղաքի կլիման բարեփոխելու համար, քանզի այնտեղ շոգ էր և անտառազուրկ, բերել է տալիս կաղնու և այլ ծառատեսակների տնկիներ, հիմնում հսկայազանգված անտառներ, և ինչպես Փավըստոս Բուզանդն է վկայում, «երկու անտառները էլ պարիսպներով փակեցին, առանց իրար հետ կցելու, անցուդարձի ճանապարհի համար: Անտառն աճեց ու բարձրացավ»: Խոսրովը այստեղ է բերել տալիս նաև բազում վայրի կենդանիներ ու կենդանություն տալով անտառին, դարձնում արքունի որսատեղ: Նրա հիմնած ան-

տառը, այսօր էլ՝ մեկուկես հազարամյակ անց կա և, պահպանելով հիմնադրի անունը, դարձել է պետական արգելանոց:

Խոսրովից հետո էլ նրա հաջորդները մի քանի դար շարունակում են կառուցումներ անել՝ ամեն մեկն ըստ իր ժամանակի ոճի ու ճաշակի: 1961—62 թթ. միջնաբերդի պեղումների ժամանակ բացվեց սրբատաշ քարով շարված, 272 քմ. մակերեսով սյունազարդ մի մեծ դահլիճ: Ըստ հնագետների, այն 4-րդ դարում կառուցված Արշակունի թագավորների գահանիստ սրահն է, որի հատակին դեռևս պահպանված է աստիճանավոր այն պատվանդանը, որի վրա դրվում էր արքայական գահը:



Արշակունիների անկումից հետո Դվինը շարունակեց ընդարձակվել և 428-ից դարձավ Մարզպանական Հայաստանի կենտրոն: Գյուտ կաթողիկոսի օրոք (461—478 թթ.) կաթողիկոսարանը Վաղարշապատից տեղափոխվեց այստեղ, և Դվինը դարձավ Հայաստանի ոչ միայն քաղաքական ու տնտեսական, այլև հոգևոր մշակութային կենտրոնը: Կառուցվեցին վեհարան, ճեմարան և այլ շինություններ: Պահպանվել են կաթողիկոսարանի դահլիճի, դիվանատան, ճեմարանի, գանձատան, մատենադարանի շինությունների հետքերը: Քաղաքի ճարտարապետական զարդը հեթանոսական տաճարի տեղում կառուցված կաթողիկե մեծ եկեղեցին էր:

Քաղաքի միջնաբերդը օղակված է եղել հզոր պարիսպներով: Միջնաբերդի շուրջը կառուցված էր ստորին բերդը, նրա և միջնաբերդի միջև ընկած տարածքում բնակվում էին բարձր խավի մարդիկ, պաշտոնյաներն ու զինվորականությունը: Ստորին բերդի կավակերտ պարիսպները ահռելի չափեր են ունեցել՝ 12—15 մետր հաստություն և 15—20 մետր բարձրություն, իսկ պարսպի չորս ծայրերին կային հզոր աշտարակներ: Յուրաքանչյուր 40 մետրի վրա կառուցված էին հսկա բուրգեր. այդպիսի երեսունից ավելի բուրգեր են եղել:



Պատմական դեպքերի բերումով Դվինը ունեցել է բազմազգ բնակչություն, և, ըստ արաբ ճանապարհորդների, քաղաքի այլազգի բնակիչները՝ արաբները, հույները, պարսիկները, ասորիները ապրում էին առանձին թաղերով, բայց միմյանց հետ հաղորդակցվում էին քաղաքի բուն բնակիչների՝ հայերի լեզվով: Քաղաքը ծաղկուն տարիներին ունեցել է 100 հազարից ավելի բնակչություն և իր գոյության համարյա ողջ ընթացքում եղել է զարգացած արհեստագործության կենտրոն: Պեղումները երևան հանեցին բազմապիսի արտադրանք տվող բազմաթիվ արհեստանոցների հետքեր: Գտնվել են զինագործների արհեստանոցներ, ձուլարան, որտեղ պատրաստվել են նետասլաքներ ու նիզակներ, տեգեր ու դաշույններ, սրեր, նաև կենցաղային իրեր՝ ուրագներ, շղթաներ, կացիններ ու մկրատներ: Զարգացած է եղել նաև պղնձագործությունը. այդ են վկայում գտնված մեծ ու փոքր կաթսաները, սափորներն ու ձիթաճրագները, զարդանախշ թասերը և այլն: Դվինցի ոսկերիչների և արծաթագործների բարձր ճաշակի ու վարպետության վկայությունն են հայտնաբերված օձագլուխ ապարանջանները, շղթայաձև մանյակները, մատանիներն ու ականջօղերը, արծաթյա գոտիներն ու սափորները: Ինչպես ամենուր Հայաստանում, այստեղ էլ խիստ բարձր աստիճանի էր հասել բրուտագործությունը:





Պեղումներից ի հայտ եկան նաև ոսկրե իրեր, հախճապակե և ապակյա առարկաներ: Այդ արհեստները, որ Դվինցի վարպետները հասցրել էին արվեստի աստիճանի, մեծ վերելք ապրեցին



հատկապես 9—18-րդ դարերում: Գտնվել են ապակյա հազարավոր իրեր, այդ թվում ապակյա զարդեր ու բաժակներ, սրվակներ, թասեր ու գավաթներ, ափսեներ, նաև ալքիմիկոսների փորձանոթներ ու սրվակներ, մինչև իսկ լուսամուտի հարթ ապակիներ: Դվինում հնուց ի վեր բարձր զարգացման էր հասել քանդակագործությունն ու քարագործությունը: Պեղումներից գտնվել են հեթանոսական ժամանակների քարե արձաններ՝ մարդկային գլուխներ՝ սրածայր գլխարկով: Սրանք քրիստոնեության մուտքի ժամանակ ջարդվել էին և թաղվել հողի մեջ: Դվինցի վարպետները հետագա դարերում նս շարունակել են իրենց արհեստը՝ զարդաքանդակել պալատներն ու ապարանքները, եկեղեցիների ու բնակելի տների ճակատներն ու շքամուտքերը:



Եթե անցյալի վարպետների արտադրանքը հողի մեջ պահպանվել է երկար դարեր, ապա դվինցի աշխարհահռչակ ջուլհակների արտադրանքից համարյա ոչինչ չի մնացել: Արաբ ճանապարհորդ Ալ Իստահրին վկայում է, որ «այս քաղաքում արտադրվում են բրդյա շորեր և գորգեր, բարձեր, բազմոցներ (մինդար), ժանյակներ և հայկական արտադրության այլ առարկաներ»: Նրա ժամանակակից մեկ ուրիշ արաբ ճանապարհորդ՝ Իբն Հաուկալը գրում է, որ Դվինում արտադրված բազմոցների, գորգերի, ծածկոցների, խալիչաների ու բարձերի «նմանը չկա աշխարհիս մի ծայրից մինչև մյուսը, բոլոր ուղղություններով»:

Եվ բնական էր, որ այս պայմաններում մեծ զարգացում ապրեց միջազգային առևտուրը: Դվինից սկիզբ էին առնում վեց մայրուղիներ, որոնք հայ և օտար վաճառականներին տանում էին Կովկաս ու հարավային Ռուսաստան, Փոքր Ասիա և հարավային Եվրոպա, հյուսիսային Աֆրիկա և Բյուզանդիա, Միջագետք ու Միջին Ասիա: Պրոկոպիոս Կեսարացու վկայությամբ Դվինը դեռևս

5-րդ, 6-րդ դարերում միջազգային առևտրի կարևորագույն կենտրոն էր. «Դվինը շատ բերքատու երկիր է, ունի բարեխառն օդ և լավ ջուր: Այստեղ դաշտերը հարթ են և հարմար ձիավարության: Միմյանց շատ մոտիկ գտնվող բազմամարդ գյուղերը բնակված են առևտրականներով, որովհետև Հնդկաստանից, հարևան Վրաստանից և պարսիկների ու նույնիսկ հռոմեացիների տիրապետության ներքո գտնվող գրեթե բոլոր տեղերից այդտեղ են բերում ապրանքներ, որոնցով նրանք առևտուր են անում»:

Քաղաքը քանիցս ավերվել ու վերակառուցվել է, բայց երևի ամենասարսափելին 640 թվ. արաբների հարձակումն էր: Պատմիչ Ղևոնդը գրում է, որ արաբները «քաղաքը պատերազմելու ընդունակ այրերից թափուր գտան, քանզի ամենքը Թեոդորոս իշխանի հետ գնացել էին, և միայն կանայք, մանուկներ և այլ խառնիճաղանջ (բազմություն) կար, որի մեջ պատերազմելու ընդունակ այրեր չկային: Հասան քաղաք, անմիջապես գրավեցին ամրոցը և այնտեղ գտնվող տղամարդկանց կոտորեցին, իսկ կանանց ու մանուկներին՝ երեսուներեք հազար հոգի, գերեվարեցին»:

Երբ Դվինը դարձավ Արաբական խալիֆայության Արմինիա վարչական միավորի կենտրոն, նրա վիճակն ավելի վատացավ, քաղաքում և շրջակայքում հոծ խմբերով բնակություն հաստատեցին արաբական վաչկատուն ցեղեր: Դվինը դարձավ արաբ ոստիկանների նստավայր: Միայն բուն արաբական տիրապետության շրջանում (701—855 թթ.) միմյանց հաջորդել են հարյուրից ավելի ոստիկաններ: Հայ ժողովուրդը, սակայն, չհաշտվեց իր պետականության կորստի հետ և շուրջ երկու դար ուժերի գերագույն լարումով ու անթիվ զոհերի գնով պայքարեց իր անկախության համար: Բագրատունիների իշխանության հաստատումից (862), ապա Հայաստանի անկախության վերականգնումից (885) հետո Դվինը մինչև 1208 թ., երբ Զաքարյանների տիրույթներին միացվեց, լինելով Դվինի ամիրայության կենտրոնը, բազմիցս ավերվել է բյուզանդացիների, ատրպատականցիների և մյուս նվաճողների կողմից: Բայց Դվինի ամենաահավոր փորձությունը 893 թ. երկրաշարժն էր: Թովմա Արծրունին երկրաշարժի պատճառն համարում է դվինցիների հղփացած վարք ու բարքը. «Դվին քաղաքը՝ մարդաշատ, պատվարված պարսպավոր պատնեշներով, հղփացած ու հափրացած վաճառականությամբ, տեսակ-տեսակ պղծություններով: Այն հիմքից տապալեց, դժոխքի պես լայն բացեց իր բերանը, շատերին վիժեցրեց անդունդը, նրանցից ոմանց տներն իսկ գերեզմաններ դարձան իրենց համար: Դվինի քաղաքացիների քարեղեն սրտերի պատճառով չխնայեց նրանց: Սրբատեղիները, աղոթքի տները նույնպես ներգործվեցին շարժից, ճեղքվեցին, պատերը խարխլվեցին: Ասվում է, թե շարժից խեղված մարդկանց թիվը ավելի քան 70 հազար էր»: Դվինցիները այս սարսափելի աղետից հետո էլ իրենց մեջ ուժ գտան վերակառուցելու իրենց սիրելի քաղաքը, նորից վերականգնելու եկեղեցիներն ու պալատները, վաճառատներն ու արհեստանոցները: Բայց 961 թ., երբ Բագրատունյաց Հայաստանի մայրաքաղաք հռչակվեց Անին, Դվինը դանդաղորեն զիջեց իր դիրքերը: Դվինից Անի փոխադրվեց վաճառականների ու արհեստավորների մեծ մասը: Քաղաքի վրա չէին դադարում նաև հարևան ցեղերի ասպատակությունները: Դվինը կործանվեց Ջալալեդդինի արշավանքների ժամանակ (1225 թ.): Մեկ տասնամյակ անց՝ 1236-ին այն ընկավ թաթարմոնղոլների ձեռքը, վերջնականապես ավերվեց և նրա տարածքում առաջացան մի քանի գյուղեր:





Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

# ՄՈԾԱԿԻ ՀԱՐՍԱՆԻՔԸ

Մոծակն հանդիպեց մի մոծակուհու,
Երբ թափառում էր կանաչ մարգերում:
Այդպիսի թովչանք ու գեղեցկություն
Նա դեռ չէր տեսել երբեք իր օրում:

Սևորակ աչքեր, երկար թարթիչներ,
Սլացիկ հասակ՝ նրբին ու բարակ,
Եվ զգացումից մի հանկարծահաս
Մոծակի սիրտը բաբախեց արագ:

Եվ մոծակուհու առաջ ծնկելով,
Նրա սրտիկն ու ձեռքիկը խնդրեց,
Երբ լռությունը եղավ պատասխան,
Մատանին իսկույն մատիկը դրեց:

Սիրո ջերմ խոսքեր շշնջաց նրան,
Խոստացավ հետո՝ հաջորդ կիրակի,
Մի այնպիսի ճոխ հարսանիք անել,
Որ Մոծակաշենն ապշի զարմանքից:

●

Մոծակուհին ճերմակ հագել,
Դեմքն էր ծածկել ճերմակ քողով,
Իսկ մոծակի սիրտն էր զարկում
Երջանկության քաղցր դողով:

Հպարտ-հպարտ շուրջն էր դիտում
Կողքին կանգնած խաչեղբայրը,
Եվ հասնում էր մինչև գետին
Գոտուց կախված թրի ծայրը:

Եվ սկսվեց հարսանիքը:
Քավոր Մոծակն անցավ գործի.
— Երջանկությու՜մբ ապրեք,— ասաց,—
Մի՜շտ իրար հետ, մի՜շտ մի բարձի:

— Շնորհավո՜ր:
— Շնորհավո՜ր:
— Անթառամ սե՜ր:
— Պայծառ օրե՜ր,—
Գոչում էին այս-այնտեղից,
Զարկում իրար
Եվ դատարկում գավաթները,
Բարեմաղթում նորից-նորից,
Արտահայտում իրենց սերը.
— Շնորհավո՜ր...
— Շնորհավո՜ր...

Երգում էին ծղրիդները,
Մժղուկներր պարում էին,
Բոռերը ծափ էին տալիս,
Խնդությունից մարում էին:
Եվ անհատնում խրախճանքից
Մոծակաշենը խենթացել էր:
— Ես չեմ տեսել այսպիսի բան,—
Ասաց մոծակն ամենածեր:
Հավատացին հարսն ու փեսան
Հավատացին ջահելները,
Որ աշխարհը ահա հիմա
Իրենցով է սկիզբ առնում,
Իրենցով է աշխարհ դառնում,
Որ իրենցից առաջ՝ հնում
Չեն եղել ո՛չ հարսն ու փեսա,
Չեն եղել ո՛չ հարսանիքներ
Ու չեն եղել շնչավորներ:
Իրենք են որ կան՝ կլինեն,
Եվ իրենցն է թե՛ այսօրը
Եվ թե՛ վաղը, հավիտյանս
Հավիտենից...

## ԺՊԻՏՆԵՐ

— Նորից աշխարհագրությունից «մեկ» ես ստացե՞լ:

— Ես մեղավոր չեմ: Ուսուցիչն է նշանակել:

●

— Ինչո՞վ կարող ես ապացուցել, որ երկիրը կլոր է:

— Գլոբուսով:

●

Աշակերտը դպրոցից տուն եկավ նոր գրքով:

— Սա մրցանակ է, մայրի՛կ:

— Ինչի՞ համար,— հարցրեց մայրը:

— Ուսուցիչը հարցրեց, թե քանի ոտք ունի ջայլամը, ես ասացի՝ երեք և ստացա այս մրցանակը:

— Բայց ջայլամը միայն երկու ոտք ունի:

— Հիմա ես դա գիտեմ, բայց մյուս աշակերտները ասացին չորս ոտք ունի: Ես մյուսներից ավելի մոտ էի ճշմարտությանը:




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆ

# Միությունն ուժ է

(հայ ժող. հեքիաթ)



Արջը շարունակ պարծենում էր իր քոթոթի մոտ, թե ինքն ամենաուժեղն է, թե բոլորն իրենից վախենում են, իսկ ինքը ոչ ոքից վախ չունի: Քոթոթն էլ պարծենում էր իր մորով, որ էդքան ուժեղ է, որ ինքն էլ կմեծանա ու մոր պես ուժեղ կդառնա, և ամենքը կսարսափեն իրենից:

Արջն ու քոթոթը մի օր հպարտ-հպարտ քայլում են անտառով: Մյուս կենդանիները տեսնելով նրանց, սարսափահար փախչում են: Իսկ արջն ու քոթոթը ծիծաղում են բոլորի վրա, հպարտ ու հանգիստ շարունակում իրենց ճանապարհը:

Ինչպես է լինում՝ քիթը վեր ցցած արջը բախվում է մեղվափեթակին: Փեթակը շուռ է գալիս: Գազազած մեղուները դուրս են թռչում, հարձակվում արջի ու քոթոթի վրա, խայթոտում նրանց:

— Փախի՛ր, զավա՛կս, փախի՛ր,— ձայնում է արջը իր քոթոթին և ինքը, խայթոցներից խելակորույս, փախչում է ձորը:

Քոթոթը, որ խայթոցներից ցնցվում, ցատկոտում էր տեղում, ուշքի գալ չէր կարողանում և չէր հասկանում, թե ի՞նչ կատարվեց, թե ինչո՞ւ է իր ամենաուժեղ մայրը սարսափահար փախչում: Մի կերպ հաղթահարելով ցավերը, նա գնաց մոր ետևից.

— Բա պարծենո՛ւմ էիր, թե մենք ամենաուժեղն ենք, մա՛յր, թե մենք ոչ ոքից վախ չունենք: Հապա ինչո՞ւ ես վախենում, ումի՞ց ես փախչում, ինձ էլ վտանգի մեջ թողած:

— Փախի՛ր, քոթոթս, փախի՛ր, դրա ժամանակը չէ, հետո կբացատրեմ, փախի՛ր:

Քոթոթը հետևեց մորը, նրա օրինակով ինքն էլ մտավ գետը, և հազիվ ազատվեցին մեղուների խայթոցներից:

Երբ վտանգն անցավ, ցավերը մի քիչ մեղմացան, մեղուների խայթից ուռած մռութը հազիվ շարժելով, նորից խոսեց քոթոթը.

— Բա պարծենում էի՛ր...

Էլ շարունակել չկարողացավ: Արջը ամոթահար, հաստացած շրթունքներով մի կերպ հասկացրեց.

— Նրանք կազմակերպված են, որդիս... Որտեղ միություն, միաբանություն կա, էնտեղ էլ մենք ենք անզոր, ինչքան էլ առանձին վերցրած, մեզնից փոքր լինեն...

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Ֆանտաստների երազանքները աստիճանաբար իրականանում են: Դրա մեկ վկայությունն էլ «Կամպո—1» տնային ռոբոտն է: Այն կարող է բացել ու փակել դուռը, հյուրերին ըմպելիք մատուցել, թափել աղբը, զբոսանքի տանել շանը, ռադիո և հեռուստատեսային ծրագրերով զվարճացնել իր տերերին:

Կոնստրուկտորները հավատացնում են, որ այդ նորույթը թեպետ շատերին խաղալիք է թվում, իրականում մի նոր ժամանակաշրջանի սկիզբ է տնային տընտեսության ավտոմատացման: (Արդարության համար նշենք, որ կալուգացի Բ. Գրիշինի ստեղծած նմանատիպ աշխատանքի մասին գրվել է դեռևս 15 տարի առաջ): Մեխանիկական այդ ծառայի միակ ձեռքը ազատ շարժումների լայն հնարավորություն ունի և ամենափոքր առարկաներն անգամ հեշտությամբ է բըռնում: Իսկ թե հանկարծ կահույքին կամ պատերին է բախվում, ապա անմիջապես գործի է դրվում պաշտպանության հատուկ սարքը: Ղեկավարվում է ռոբոտը հեռվից, իսկ անհրաժեշտության դեպքում ծրագրավորվում է: Իհարկե, երեք ավտոմեքենայի արժեք ունի այն և հազիվ թե միջին կարողության տեր մարդը հնարավորություն ունենա գնել: Հարուստներն էլ գերադասում են դրա փոխարեն կենդանի աղախին ունենալ: Սակայն փաստը մնում է փաստ: Սերիական թողարկվող առաջին ռոբոտը բախում է դռները: (ԱՄՆ)



Թութակները զարդարում են արևադարձային անտառներն ու թռչնասերների բնակարանները, բայց միաժամանակ գյուղատնտեսության վնասատուներ են: Երբ գնում ես ավստրալիական Նոր Հարավային Ուելսի նահանգի ճանապարհներով, որտեղ տարածված են եգիպտացորենի, արևածաղկի և ցորենի դաշտեր, հեռվից նայելիս թվում է, թե ծառերը ձյունով են ծածկված: Անսպասելի կերպով ծառերի ծփանքի հետ այդ ձյունածածկոցը վեր է ածվում խոշոր, սպիտակ կակադու թութակների երամի: Իջնելով ցորենի արտերին, նրանք կտցահարում են հասունացող հասկերը: Նրանց ձայների վրա թռչում, գալիս են կակադուների նորանոր երամներ: Իրենց ծիծաղելի դեղին փուփուշիկներով ձյունաճերմակ կակադուները իսկական աղետ են դարձել ավստրալիական ագարակատերերի համար: Նրանք հսկայական վնաս են հասցընում դաշտերին: Գյուղացիները խրտվիլակներ են սարքում, որոգայթներ են դընում, հրացան են կրակում, բայց թևավոր ավազակների հախից գալ չեն կարողանում: Ահա այսպես, այդ գեղեցիկ թռչունները կատարյալ աղետ են ողջ մայր ցամաքի գյուղատնտեսության համար:



Բոլորին հայտնի է, որ երեքանիվ հեծանիվները շատ ավելի կայուն են, քան երկուանիվները: Հենց այս հանգամանքի վրա էլ իրենց ուշադրությունը հրավիրեցին մոտոցիկլետի ճապոնացի նախագծողները: Նրանք ստեղծել են «տրիցիկլետ» մի մեքենա, որ ետևում ունի երկու անիվ: Նոր մոտոցիկլետի կայունությունը ապահովվում է նաև թամբի կառուցվածքով, որը շրջադարձի վրա, վարորդի հետ միասին ավտոմատ կերպով թեքվում է դեպի հարկավոր կողմը, որպես հակակշիռ:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Փորձեք գրել հեքիաթ կամ պատմվածք՝ առանց այս կամ այն տառը օգտագործելու:

## ՓՈՔՐԻԿ ՇԼԴԻԿԸ
(ԱՌԱՆՑ «Ա» ՏԱՌԻ)

Լինում է չի լինում, մի փոքրիկ շլդիկ է լինում: Էս շլդիկը մի սովորություն է ունենում. զբոսնելու է գնում գիշերը: Ինչո՞ւ: Որովհետև ցերեկը մեծ-մեծ շլդիկները ճըզմում էին փոքրերին:

Մի գիշեր զբոսնելիս, որտեղից որտեղ մի որսորդ է լույս ընկնում, որին մեր շլդիկը երբեք չէր տեսել: Որսորդը զգում է, որ իրենից քիչ հեռու, թփերը խշշում են, իսկույն մոտենում է և ի՞նչ է տեսնում. մի փոքրիկ, սիրունիկ շլդիկ: Իսկ շլդիկը մոտեցող որսորդին տեսնում է թե չէ, լեղին ջուր է կտրում, գույնը գցում է: «Վերջս եկել է,— խորհում է շլդիկը,— հենց էստեղ, էսպե՞ս պիտի մեռնեի»:

«Իսկ ինչո՞ւ եմ վեր ընկել, փորձեմ ծըլկել»: Ու մինչ որսորդը գլխի կընկներ, որ շլդիկը շշկլել է. շլդիկը թե չորս ոտ ունեք, չորս էլ փոխ է վերցնում ու պուկ, մի շնչում չքվում: Մի տեսնեի՛ք, թե ինչպես էր թպրտում խեղճի սրտիկը, քիչ էր մնում տեղից դուրս թռչի: Իրեն բույնն է գցում թե չէ, տեղնուտեղը որոշում է, որ էլ երբեք գիշերը դուրս չի ելնի զբոսնելու, թեկուզ սովից մեռնի, ո՞վ գիտի՝ մի գեղեցիկ գիշեր ինչ կլինի իր հետ: Վե՞րջը: Մեր փոքրիկ շլդիկը մինչև վերջ, մինչև խոր ծերություն, գիշերները զբոսնելու սովորությունը թողեց:

ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆ




● Այս գծագրում, ինչպես տեսնում եք, չկան զույգ թվեր: Վանդակներում եղած թվերը պետք է վերադասավորել այնպես, որ թե՛ հորիզոնական, թե՛ ուղղահայաց և թե՛ անկյունագծերի 4 թվերի գումարը հավասար լինի 64-ի:

### «ՊԻՈՆԵՐ» № 6-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

— Խոսակցությունը տեղի էր ունենում առավոտյան ժամը 9-ն անց 36 րոպեին: Եթե Մաք-Գուիրը Կլեմսիին բարի լույս չմաղթեր, ապա ճիշտ կլիներ նաև «երեկոյան 7-ն անց 12 րոպե» պատասխանը:

— Տիկին Օ՛Տուլը կշռում է 135, երեխան՝ 25, իսկ շունը՝ 10 ֆունտ:

— Ընձուղտը առաջ կանցնի գետաձիուց մղոնի 23/64 չափով:

Լուսանկարը՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.




*Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ*

*Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)*

*Տեխ. խմբագիր՝ Մ. ՔԵՋՕՂԼՅԱՆ սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Հանձնված է արտադրության 29.04.83 թ.։ Ստորագրված է տպագրության 15.07. 1983 թ.։ ՎՖ 12190։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 69570։ Պատ. 1262։ Գինը՝ 15 կ.։*

Сдано в набор 29.04.83 г. Подписано к печати 15.07.1983 г. Формату 70×100 1/16. ВФ 12190. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать 9,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 69570. Заказ 1262. Цена 15 коп